## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից։

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը։

Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

9

ՍԵՊՏԵՄԲԵՐ 1975

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 Թ.

ИЗДАЕТСЯ С 1922 Г.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угиов» («По ленинскому пути»)—теоретический и политический журнал ЦК КП Армении


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ










# ԱՐԺԱՆԱՎԱՅԵԼ ԴԻՄԱՎՈՐԵՆՔ ՍՄԿԿ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ

ՄԵՐ ԲԱԶՄԱԶԳ ԵՐԿՐԻ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԸ, հաջողությամբ կատարելով ընթացիկ հնգամյակի վիթխարի պլանները, ձգտում են հայրենանվեր նոր գործերով դիմավորել ՍՄԿԿ XXV համագումարը: Սովետական մարդու համար դա բնական մղում է, իր քաղաքացիական, հայրենասիրական պարտքի կատարման վառ դրսևորում: Սովետական մարդիկ քաջ գիտեն, որ ՍՄԿԿ յուրաքանչյուր համագումար նշանակալի իրադարձություն է մեր կուսակցության և սովետական ողջ ժողովրդի կյանքում: Կուսակցական համագումարներն ամփոփում և ընդհանրացնում են ձեռք բերված սոցիալ-տնտեսական նվաճումները, հասարակական կյանքի զարգացման պրոցեսները, կոմունիստներին ու բոլոր աշխատավորներին զինում նոր հասարակարգի կառուցման գիտականորեն հիմնավորված կոնկրետ ծրագրով:

ՍՄԿԿ XXIV համագումարից հետո անցած ժամանակաշրջանում մեր երկրի աշխատավորները, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, առաջընթաց վիթխարի քայլ կատարեցին էկոնոմիկայի, գիտության ու կուլտուրայի զարգացման բնագավառում: Ուստի, սովետական բոլոր մարդիկ կուսակցության նոր համագումարը դիմավորում են նորանոր սխրանքներով, բարձր տրամադրությամբ, իրենց գոհունակությունը հայտնում ՍՄԿԿ ներքին ու արտաքին քաղաքականության նկատմամբ, քաղաքականություն, որը խարսխված է մարքս-լենինյան ամենահաղթ ուսմունքը ստեղծագործաբար կիրառելու վրա:

Նկատի ունենալով էկոնոմիկայի առաջնային նշանակությունը կոմունիստական հասարակարգի կառուցման գործում, ընթացիկ հնգամյակում ևս կուսակցությունն իր գլխավոր ուշադրությունը բևեռել է երկրի տնտեսական զարգացման վրա:

ՍՍՀՄ էկոնոմիկան անշեղ վերելք է ապրում: Արտադրության բոլոր ճյուղերում կատարվել և կատարվում են որակական փոփոխություններ: Արդյունաբերական ու գյուղատնտեսական արտադրանքի աճի զգալի մասը ստացվում է աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին: Հատկապես արագ են զարգանում ժողովրդական տնտեսության այն ճյուղերը (մեքենաշինություն, էլեկտրաէներգետիկա, ռադիոէլեկտրոնիկա, սարքաշինություն, ավտոմատացված միջոցների արտադրություն), որոնք էապես պայմանավորում են երկրի տեխնիկական առաջընթացը: Էկոնոմիկայի ասպարեզում սովետական ժողովրդի նվաճումների կարևոր գրավականը ժողովրդական տնտեսության զարգացման կայուն տեմպերն են: Զարգացած սոցիալիզմի պայմաններում հաջողությամբ է լուծվում կոմունիստական շինարարության գլխավոր տնտեսական խնդիրը՝ կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը: Այս վիթխարի պրոբլեմի լուծման համար պայքարում են մեր երկրի միլիոնավոր աշխատավորները: Լայն ծավալ են ստացել սոցիալիստական մրցությունը, կոմունիստական աշխատանքի և նորարարական շարժումները: Աշխատավորական զանգվածների եռանդուն ջանքերը տվել են իրենց առատ պտուղները: Այսպես, հնգամյակի անցած չորս տարիների ընթացքում արդյունաբերական արտադրանքի ծավալն աճել է ավելի քան մեկ երրորդով և գերազանցել նախորդ հնգամյակի ցուցանիշները: Իններորդ հնգամյակում ազգային եկամուտը

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԱՆՁԻ ՁԵՎԱՎՈՐՈՒՄԸ

**Կ. Լ. ԴԱԼԼԱՔՅԱՆ**
ՀԿԿ Կենտկոմի պրոպագանդայի և
ագիտացիայի բաժնի վարիչ

ԲԱԶՄԱԿՈՂՄԱՆԻ Է ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅԱՆ դաս-
տիարակչական դերի բարձրացման համար պայմաններ
ստեղծելու պրոբլեմը: Այն ներառում է օբյեկտիվ և սուբյեկտիվ հարցերի մի
ողջ կոմպլեքս, այնպիսի հարցերի, ինչպես՝ ամբողջությամբ վերցրած հասա-
րակական-քաղաքական կլիման քաղաքում, շրջանում, հանրապետությունում,
տնտեսական, գաղափարական, քաղաքական աշխատանքի դրվածքն ընդհա-
նուր և կոնկրետ օբյեկտում, սոցիալիստական մրցության կազմակերպումն ու
ղեկավարումը, հասարակական արտադրության մեջ ներգրավված բնակչու-
թյան տարբեր խմբերի պրոֆեսիոնալ, տարիքային, բարոյա-հոգեբանական
առանձնահատկությունների հաշվառումը և այլն, և այլն:
Այդպիսի ծրագրով կատարվող հետազոտությունը չափազանց կարևոր և
բարդ խնդիր է, որը կարելի է լուծել գաղափարական ճակատի, կուսակցական
աշխատողների ու գիտնականների համատեղ ջանքերով: Որքան ավելի ամուր
լինեն նրանց կապերը, որքան ավելի խոր ու համակողմանի դառնան սոցիա-
լական պրոցեսների ու պրոբլեմների, գաղափարա-քաղաքական ներգործու-
թյան վիճակի ու արդյունքների գիտական ուսումնասիրությունները, այնքան
ավելի մտածված ու նպատակասլաց կլինի մեր գաղափարական աշխատանքը,
և դրա հետ կաճի սոցիալիստական մրցության դաստիարակչական արդյունա-
վետությունը:
Սոցիալիստական մրցության դաստիարակչական պոտենցիալի հետագա
բարձրացման հետ կապված պրոբլեմների բարդ կոմպլեքսում մենք կշոշա-
փենք միայն երկու հարց՝ մրցության կազմակերպման ու ղեկավարման և հան-
րապետության ժողովրդական տնտեսության, հասարակական-քաղաքական
կյանքի ղեկավարման, կուսակցական աշխատանքի արմատական բարելավ-
ման համար կուսկազմակերպությունների պայքարի հարցերը: Դժվար չէ
առաջին իսկ հայացքից համոզվել, որ, ընդհանրապես, նոր մարդու դաստիա-
րակման և, մասնավորապես, սոցիալիստական մրցության դաստիարակչական
ֆունկցիայի բարձրացման համար պայմանների ստեղծման խնդիրը անմիջա-
կանորեն կապված է վերոհիշյալ պրոբլեմների հետ:
Այսօր հանրապետությունում ստեղծվում են այդ պրոբլեմների հաջող
լուծման բոլոր անհրաժեշտ նախադրյալները: Հայաստանի կոմկուսի Կենտկոմի
հունվարյան (1975 թ.) պլենումը խորապես վերլուծեց գործերի վիճակը հան-
րապետության էկոնոմիկայի և հասարակական կյանքի բոլոր բնագավառնե-
րում, բացահայտեց հնգամյա պլանի թերակատարման պատճառները, սուր և
սկզբունքային քննադատության ենթարկեց բացասական երևույթները, մասնա-
վորապես մանրբուրժուական եսամոլությունն ու հասարակության միջոցների
հաշվին հարստանալու ձգտումը, կաշառակերությունը, գոփողականությունը,
խուլիգանությունը, հանրօգուտ աշխատանքից խուսափելը և այլն, ուղիներ



նշեց կադրային քաղաքականության մեջ թույլ տրված կոպիտ սխալները շտկ-
կելու, բարոյա-քաղաքական ողջ մթնոլորտն առողջացնելու համար:
Հայաստանի կոմկուսի Կենտկոմի հունվարյան պլենումը կարևոր դեր խա-
ղաց ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումները մեր հանրապետությունում ան-
շեղորեն կատարելու գործում, օբյեկտիվ հիմք ստեղծեց հասարակական-քա-
ղաքական կյանքի բոլոր կողմերի բարելավման, կուսակցական-կազմակեր-
պական և քաղաքական աշխատանքի հետագա կատարելագործման համար:
Բնական է, որ այդպիսի պայմաններում հանրապետության ողջ կուսակ-
ցական կազմակերպությունը, նրա շրջանային ու քաղաքային կոմիտեները,
սկզբնական կազմակերպությունները պետք է ավելի կոնկրետ ու գործարար
կերպով, քննադատաբար վերաբերվեն իրենց գործունեությանը, ավելի առար-
կայորեն զբաղվեն ինչպես արտադրության կազմակերպման, այնպես էլ աշ-
խատավորների դաստիարակության պրոբլեմներով:
Բացառություն չի կազմում նաև աշխատանքի կազմակերպման ու մարդ-
կանց դաստիարակության մի այնպիսի կարևոր օղակ, ինչպիսին սոցիալիս-
տական մրցությունն է: Այդ ճակատում քննադատության սուր ծայրն առաջին
հերթին պետք է ուղղվի շատ կոլեկտիվներում արմատացած ձևամոլության
դեմ: Ձևական մոտեցումը, ադմինիստրատիվ ու ցուցամոլությունը այն հիմ-
նական չարիքներն են, որոնք ամլացնում են սոցիալիստական մրցությունը,
ավելին՝ վարկաբեկում այդ մրցության բուն իսկ բարձր գաղափարը: Ձևամո-
լության դեմ մղվող պայքարն անհրաժեշտ է ամրապնդել ամբողջ սոցմրցու-
թյան բարելավման ու նրա արդյունավետության բարձրացման գործուն ծրա-
գրով:
Սոցիալիստական մրցությունը զարգացած սոցիալիզմի պայմաններում
դարձել է մասսաների՝ իր թափով ու խորությամբ վիթխարի սոցիալական
ստեղծագործություն: Տարեցտարի ուժեղանում է նրա ներգործությունը երկրի
տնտեսական պոտենցիալի ամրապնդման և ժողովրդի բարեկեցության բարձ-
րացման վրա: Դրան զուգընթաց աճում է նրա սոցիալ-դաստիարակչական դե-
րը: Դեռ 1917 թ. Վ. Ի. Լենինը գրում էր, որ սոցիալիստական մրցությունը
հնարավորություն կտա «իրոք աշխատավորների մեծամասնությունը ներգրա-
վելու այնպիսի աշխատանքի ասպարեզ, որտեղ նրանք կարող են երևան բերել
իրենց, ծավալել իրենց ընդունակությունները, դրսևորել տաղանդներ, որոնք
ժողովրդի մեջ անսպառ են...» (Երկեր, հ. 26, էջ 493—494):
Ստեղծագործության ինքնուրույն ճանապարհ դուրս բերելով միլիոնավոր
աշխատավորների, բացահայտելով նրանց ձիրքն ու տաղանդը, սոցիալիստա-
կան մրցությունն այսօր ձևավորում է մարդու քաղաքացիական վեհ հատկա-
նիշները, նրա բարոյական սկզբունքներն ու գաղափարական համոզմունքները:
Այս առումով հետաքրքրական միտք է արտահայտել սոցիալիստական աշխա-
տանքի հերոս Ա. Գիտալովը. «Յուրաքանչյուր մեխանիզմ իր բնույթն ունի:
Իսկ մա՞րդը: Փորձե՛ք բանալի գտնել ամեն մեկի համար: Այդ գործում ամենից
շատ օգնում է սոցմրցումը: Յուրաքանչյուր մարդ ունի իր տաղանդը, իր կեն-
սահետաքրքրասիրությունը, ինչպես ասում են՝ իր «հիվանդոտ» տեղը: Արդ,
մրցությունն օգնում է մարդուն՝ իրեն գտնել, դրսևորել իր բնավորու-
թյունը» (Վ. Գ. Սմոլկովի Սոցիալիստական մրցությունը զարգացած սոցիա-
լիզմի պայմաններում գրքից, «Мысль», 1974, էջ 142):
Հենց այդ «իրեն գտնելու» մեջ է ամփոփվում մրցության հսկայական դաս-
տիարակչական էֆեկտը, դրսևորվում անհատի վրա նրա ներգործության
չափը:

ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ԲԱՐՕՐՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ ԿԱՏԱՐՎՈՂ գիտակցական աշ-
խատանքով, ստեղծագործական մրցությամբ, դժվարությունների հաղթահար-
մամբ են դաստիարակվում սովետական մարդու պարտքի, պատվի, հպար-
տության ազնիվ զգացումները, ձևավորվում կոլեկտիվիզմի, ստեղծագործա-
կան համագործակցության և փոխօգնության հատկանիշները: Աշխատանքի՝
որպես գիտակցված պահանջմունքի, որպես մարդկային կյանքի էության,

«Հնգօրյակը չորս օրում», «Աշխատել առանց խոտանի», որոնք աշխատավորների քաղաքական բարձր գիտակցության ցայտուն վկայությունն են։

Առաջավոր փորձի լայն տարածման, շարժման մասսայականության զարգացման համար պայմաններ ստեղծելու մասին կուսակցական, կոմերիտական, արհմիութենական կազմակերպությունների ցուցաբերած մշտական հոգատարությունը զգալի չափով նպաստեց այն բանին, որ այժմ սոցիալիստական մրցության մեջ ընդգրկված են հանրապետության 750 հազար աշխատավորներ։

Մրցության մասսայականության, նրա դաստիարակչական պոտենցիալի բարձրացման գործում մեծ դեր են խաղացել առաջավոր փորձի տարածման և արմատավորման այնպիսի ձևեր ու մեթոդներ, ինչպես՝ կոմունիստական աշխատանքի դպրոցները, ետ մնացող բրիգադները նորարարներով համալրելը, վարպետության բարձրացման շարժումը և այլն։ Այդ ասպարեզում բեղմնավոր աշխատանք է տանում ժողովրդական տնտեսության նվաճումների հանրապետական ցուցահանդեսը, ինչպես նաև գիտատեխնիկական ինֆորմացիայի սիստեմը։

Սակայն հարկ է նշել, որ պայքարելով ստեղծագործական նախաձեռնության, աշխատավորների ձեռներեցության զարգացման համար, որոշ արտադրական կոլեկտիվներ ծայրահեղության մեջ են ընկնում։ Յուրաքանչյուր աշխատանքային նախաձեռնություն ունի տարածման իր ոլորտը, արդյունավետության իր գործակիցը։ Մինչդեռ հաճախ այնպես է պատահում, որ ձեռնարկության կոլեկտիվը միաժամանակ պաշտպանում է տասնյակ նախաձեռնություններ։ Իսկ դա առաջ է բերում ուշադրության և ուժերի ցրում, կամպանիականություն ու ձևականություն, մի բան, որ բացասաբար է անդրադառնում նաև մրցության դաստիարակչական էֆեկտի վրա։

Գլխավորը ջոկելու, առավել արդյունավետ նախաձեռնություններն ըստ ամենայնի տարածելու վրա կոլեկտիվի ջանքերը կենտրոնացնելու կարողությունը՝ այդ կոլեկտիվի ձեռներեցությունն ու ստեղծագործական հնարավորությունները զարգացնելու, ընդունված պարտավորություններն ու հանդիպական պլանները հաջողությամբ կատարելու համար աշխատողներին մոբիլիզացնելու կարևոր պայմաններից մեկն է։

Այստեղ շատ բան կախված է աշխատավորների նյութական ու բարոյական խրախուսման բազմազան ձևերի հմուտ և խելացի օգտագործումից։ Հայտնի է, թե այդ հարցին ինչպիսի նշանակություն էր տալիս Վ. Ի. Լենինը. «Բավական չէ գյուղացիներին և բանվորներին ասել՝ լարեցեք աշխատանքային կարգապահությունը։ Բացի դրանից, հարկավոր է օգնել նրանց, հարկավոր է վարձատրել այնպիսիներին, որոնք անհուն թշվառություններից հետո շարունակում են աշխատանքի ճակատում հերոսություն ցուցաբերել» (Երկեր, հ. 31, էջ 643)։

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏԿՈՄԸ, հանրապետության կառավարությունը, ՀԱՄԽ-ը և Հայաստանի ԼԿԵՄ Կենտկոմը լուրջ միջոցներ են ձեռնարկել սոցիալիստական մրցության առաջավորներին խրախուսելու համար։ Փոխանցիկ կարմիր դրոշներ, դիպլոմներ ու դրամական պարգևներ են նախատեսված ձեռնարկությունների, արտադրամիավորումների, գիտահետազոտական և այլ կազմակերպությունների, քաղաքների և շրջանների համար։ Մրցության մեջ հաղթած լավագույն բրիգադների համար սահմանված են մինիստրությունների հուշադրոշներ, դիպլոմներ, հուշանվերներ։

Վերը նշված մրցություն-համագործակցության զարգացման ընթացքում աշխատավորների խրախուսման հետաքրքրական ձև է գտնված Լենինականի տեքստիլ կոմբինատում։ Այստեղ մրցույթ է հայտարարված փոխանցիկ «Վարպետության ոսկե բանալի», ինչպես և «Լավագույն դաստիարակին» հուշադրոշի նվաճման համար։ «Բանալին», որի վրա փորագրված է հաղթողի անունը, ինչպես և դրամական պարգևը շնորհվում են նրան, ով բոլորից արագ է տիրապետել վարպետությանը, նորեկների մեջ հասել ամենաբարձր ցուցանիշ-



ների։ «Բանալին», ինչպես և հուշադրոշը, շնորհվում են հանդիսավոր պայմաններում։ Հնգամյակի ավարտից հետո դրանք հանձնվելու են կոմբինատի աշխատանքային փառքի թանգարանին։

Կիրովականի քիմիական մանրաթելի գործարանում լավագույն աշխատողներին հանդիսավոր իրադրության մեջ շնորհվում է սոցիալիստական մրցության դափնեկրի կոչում։ Նրանց դիմանկարները ցուցադրվում են աշխատանքի դափնեկիրների ծառուղում։

Այնտեղ, որտեղ կարողանում են աշխատանքի մարդուն շրջապատել հարգանքով ու մեծարանքով, որտեղ կոլեկտիվը, հատկապես երիտասարդությունը պարզ գիտակցում է, որ աշխատողի հեղինակությունն ամենից առաջ կախված է աշխատանքի նկատմամբ նրա ստեղծագործական վերաբերմունքից, կոլեկտիվի հաջողությամբ շահագրգռված լինելուց և ընդհանուր գործում ունեցած ներդրումից— այնտեղ, որպես կանոն, աճում է մրցության դաստիարակչական էֆեկտը։ Որքան ավելի խոշոր լինեն մեր երկրի հաջողությունները սոցիալիստական շինարարության բնագավառում, այնքան մեծ նշանակություն կունենա աշխատանքային չափանիշը անձի հասարակական նշանակալիության գնահատման գործում։ Այդ հանգամանքը պարտավորեցնում է կուսակցական կազմակերպություններին շարունակ որոնել ու գտնել աշխատանքի լավագույն մարդկանց նյութապես ու բարոյապես խրախուսելու արդյունավետ ձևեր ու մեթոդներ։

Մինչդեռ որոշ արտադրական կոլեկտիվներում դրամական պարգևների բաշխման ժամանակ դեռևս նկատվում են հավասարարության փաստեր, նյութական խրախուսման ֆոնդերի ավելորդ մանրատում, երբեմն հրապուրվում են անձնվեր աշխատանքի համար նյութական խրախուսման ձևերով՝ ի վնաս բարոյականի։ Այս ամենը բացասաբար է անդրադառնում կոլեկտիվի դաստիարակության, նրանում ստեղծագործական, բարոյա-հոգեբանական առողջ մթնոլորտ ստեղծելու վրա։

Նկատի ունենալով, որ բարոյական ձևերն ունեն ո՛չ միայն խրախուսիչ, այլև կանխարգելիչ նպատակներ, այժմ հանրապետությունում կոմունիստական բարոյականությանը հակադիր երևույթների դեմ մղվող պայքարում ավելի ու ավելի հաճախ է օգտագործվում ներգործության այդ ձևը։

Բանվորական ամեն մի կոլեկտիվում սոցիալիստական կարգապահության խախտողների, խոտանարարների, հեշտ վաստակի սիրահարների նկատմամբ անհանդուրժողականության մթնոլորտի ստեղծումն այն կարևոր խնդիրներից մեկն է, որ այսօր լուծում են հանրապետության կուսակցական կազմակերպությունները։

Խթանման ինչպես նյութական, այնպես էլ բարոյական ձևերը պետք է հասցեագրված լինեն առանձին անհատին, սոցիալիստական մրցության առանձին մասնակցին։ Ընդհանրապես անհատական-դաստիարակչական աշխատանքի և մասնավորապես մարդկանց սոցիալիստական մրցության մեջ անհատապես ներգրավելու պրոբլեմը հանրապետության կուսակցական կազմակերպությունները դեռևս մինչև վերջ չեն լուծել։

Վերջին տարիներս որոշ արտադրական կոլեկտիվներում թուլացել էր ուշադրությունն անհատական մրցության կազմակերպման նկատմամբ։ Հաճախ նկատվում էին դեպքեր, երբ յուրաքանչյուր աշխատողի որակավորումը, հմտությունը և ընդունակությունները հաշվի առնող իսկապես անհատական պարտավորությունների փոխարեն ստանդարտ բլանկի վրա գրի էին առնվում այնպիսի կետեր, որոնք բովանդակում էին միայն ծառայության տարրական պահանջները, օրինակ՝ չուշանալ աշխատանքից, մաքուր պահել աշխատատեղը և այլն։

Հասկանալի է, որ մրցության կազմակերպման նման պրակտիկայի դաստիարակչական էֆեկտը կարող է միայն բացասական լինել։ Դա մարդկանց համակում էր անտարբերությամբ, անվստահությամբ՝ մրցության գործունեության նկատմամբ, կաշկանդում նրանց ստեղծագործական հնարավորությունները։

ՍՄԿԿ Կենտկոմի «Սոցիալիստական մրցության կազմակերպման հետագա բարելավման մասին» որոշումը կուսակցական կոմիտեների ուշադրությունը բևեռեց անհատական մրցության՝ որպես աշխատանքային մրցակցության առավել մասսայական և արդյունավետ միջոցներից մեկի վրա։

Անհատական մրցության գործունությունը բարձրացնելու վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի որոշման պահանջը նշանակում է, որ կուսակցական կազմակերպությունները նախ պետք է արմատախիլ անեն այդ մրցության մեջ եղած ձևամոլությունն ու շաբլոնը։ Նրանց ջանքերը, առաջին հերթին, պետք է ուղղվեն այն նպատակին, որ անհատական պարտավորությունները մշակելիս ավելի մեծ ուշադրություն հատկացվի աշխատողների անձնավորության տիպոլոգիական առանձնահատկություններին՝ արժեքային կողմնորոշմանը, կրթական ու մասնագիտական մակարդակին, արտադրական ստաժին, հակումներին, խառնվածքին։ Դա հնարավորություն կտա խուսափելու միօրինակ պարտավորություններից, հասնելու մրցության տնտեսական ու դաստիարակչական ավելի մեծ արդյունավետության։

Անհատական պարտավորությունները, կոլեկտիվ պարտավորությունների հետ մեկտեղ, պետք է հաճախակի քննարկվեն բանվորական ժողովներում, որպեսզի յուրաքանչյուր մրցող անձնական պատասխանատվություն զգա իր ընկերների առջև, իսկ կոլեկտիվն ավելի մեծ հնարավորություն ունենա մասնակցելու պարտավորությունների քննարկմանը, վերահսկելու դրանց կատարմանը։

ՀՆԳԱՄՅԱԿԻ ԵԶՐԱՓԱԿԻՉ ՏԱՐՎԱ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ պարտավորությունները տոգորված են ստեղծագործական որոնումների ոգով, դրանցում մարմնավորված են թե՛ կենդանի նախաձեռնությունը, թե՛ առաջ խոյացող համարձակ տեխնիկական միտքը, թե՛ կուտակված փորձը և թե տնտեսական խիստ հաշվարկը։ Ընթացիկ տնտեսական տարին դարձնել համառ, բարձր արտադրողական աշխատանքի և արտադրանքի գերազանց որակի տարի— ահա այն նպատակը, որին ձգտում են հանրապետության աշխատավորները։ Հասարակության բարօրության համար կատարվող անձնվեր աշխատանքում են ձևավորվում նրանց գաղափարա-բարոյական համոզմունքները, բացահայտվում նրանց ձիրքն ու ընդունակությունները։ Ուստի և մրցության դաստիարակչական դերի հետագա բարձրացման նկատմամբ հոգատարությունը մեր կուսակցական կազմակերպությունների ամենաառաջնահերթ և կոնկրետ խնդիրն է։

# ԿԵՆՍԱՈՐԱԿԸ ԵՎ ԱՊՐԵԼԱԿԵՐՊԸ ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ ՊԱՅՔԱՐԻ ՕԲՅԵԿՏ

**Մ. Պ. ՄՉԵԴԼՈՎ**
Փիլիսոփայական գիտությունների դոկտոր

ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԵՎ ԿԱՊԻՏԱԼԻՍՏԱԿԱՆ հասարակական-քաղաքական սիստեմների, կոմունիստական և բուրժուական գաղափարախոսության հակամարտության յուրաքանչյուր ժամանակաշրջան ունի իր առանձնահատկությունները։ Ապրած ժամանակաշրջանին համապատասխան մշակելով գաղափարական այս կամ այն շտամպը, բուրժուական գաղափարախոսները շարունակ փորձում են հնարավորին չափ ավելի լայն զանգվածների պարտադրել գնահատականների, վարվելակերպի, հայացքների, մտածողության և անգամ հույզերի որոշակի ստերեոտիպեր։ Բոլոր դեպքերում հոգևոր, սոցիալ-քաղաքական, նյութական արժեքների սիստեմատիկորեն պարտադրվող ըմբռնումը կոչված է վերջին հաշվով հաստատելու հասարակական գոյի, բուրժուական իրավական օրենքների, դեմոկրատական նորմերի, քաղաքական պրակտիկայի, աշխարհայացքային սկզբունքների բուրժուական ձևերի գերազանցությունը։

Վերջին ժամանակներս տարբեր պրոֆիլի բուրժուական հասարակագետների, ամբողջ պրոպագանդիստական ապարատի, անգամ պետական հաստատությունների ուշադրության կենտրոնում հայտնվեցին «կենսաորակի» պրոբլեմները։ Ըստ որում ավելի բարձր «կենսաորակի» հասնելու անհրաժեշտության մասին կատեգորիկ հավաստումներն ու դեկլարացիաները (երբեմն նույնիսկ շատ արմատական բնույթի) զուգակցվում են պահպանողական հիմնավոր նախադրյալի հետ, որի համաձայն գոյություն ունեցող ապրելակերպի պայմաններում պահանջվող կենսաորակին կարելի է հասնել միայն մեկնակետ ունենալով նյութական և սոցիալական կարգի բուրժուական իրողությունները։ Տեսական ու գործնական լայն շրջան ընդգրկող այդ թեմատիկան մշակում և պրոպագանդում են բուրժուական սոցիոլոգներն ու սոցիալ-դեմոկրատական գործիչները, կաթոլիկական քարոզիչներն ու աջ ռևիզիոնիստները... Ֆրանսիայում նույնիսկ ստեղծվել է կենսաորակի հատուկ մինիստրություն, որը զբաղվում է շրջապատող միջավայրի, ազատ ժամանցի, տուրիզմի, երիտասարդության, սպորտի հարցերով։

Այն փաստը, որ բուրժուական գաղափարախոսները դիմում են «ապրելակերպի», «կենսաորակի» թեմատիկային, մեծ չափով կապված է այն բանի հետ, որ XX դարի երկրորդ կեսը նշանավորվել է սոցիալիստական սիստեմի փառահ հաղթարշավով, ազգային-ազատագրական, համադեմոկրատական շարժման վերելքով, դասակարգային պայքարի նոր թափով, մեր մոլորակի բոլոր մայրցամաքներում կոմունիստական գաղափարախոսության լայն տարածմամբ։ Ուստի սոցիալական գոյի որակական բնութագրերի հետ կապված պրոբլեմների մշակումը մի յուրատեսակ տուրք է զարգացող ազատագրական, հատկապես սոցիալիստական շարժմանը, դա շատ բաներում նաև գաղափա-

ժամերը, խրոնիկական ինֆլյացիան, որը շարունակ կրճատում է աշխատավորների բյուջեն։ Այդ ամենին գումարած նաև գործազրկության մշտական սպառնալիքը (այժմ, օրինակ, Մեծ Բրիտանիայում կա 2 միլիոն գործազուրկ, ԱՄՆ-ում՝ 4,4 միլիոն, իսկ ամբողջ ոչ սոցիալիստական աշխարհում՝ մոտ 100 միլիոն գործազուրկ)։

Զարգանալով համակողմանի առաջընթացը բացառող հակասությունների մեջ, բուրժուական կարգը ամբողջ երկրների ժողովուրդների (գաղութներ, կախյալ երկրներ) զրկել ու զրկում է քաղաքակրթության պտուղներից, բուն մետրոպոլիաներում բոլոր շրջանները հավասարապես չեն զարգանում (օրինակ, Իտալիայի հարավը և հյուսիսը), ազգային փոքրամասնությունները (ոչ սպիտակամորթ բնակչությունը, ներգաղթածները) գտնվում են վատթարագույն պայմաններում։ Այստեղ արտոնյալների հարստությունը, շռայլությունն ու աչք ծակող շքեղությունը առնչվում են զանգվածների ընչազրկության հետ, էկոնոմիկայի հարաբերական աճը զուգակցվում է դեպրեսիաների ու անկումների հետ, անտագոնիզմը հատուկ է ինչպես նյութական և հոգևոր արտադրության բուն պրոցեսին, այնպես էլ բաշխմանը։

Մեր դարում իմպերիալիստական շրջանները ամեն կերպ փորձում են աշխատավորական զանգվածներին հեռու պահել բուն քաղաքականությունից, սահմանափակել դասակարգային լարված պայքարում նվաճված բուրժուա-դեմոկրատական իրավունքներն ու ազատությունները։

Զարգացած կապիտալիզմի երկրներում իշխանություն ունեցողների կողմից անողոք շահագործման, քաղաքական ու գաղափարական ճնշման ենթարկվող ժողովրդական զանգվածները, աշխատավոր մարդը ստիպված են ապրել բուրժուական ապրելակերպի անփոփոխ ատրիբուտները կազմող գանգստերիզմի աճման և հաշիշամոլության տարածման պայմաններում։ Սեռային, տարիքային կամ ազգային հատկանիշների նկատմամբ կիրառվող խտրականությունը, բժշկական թանկ սպասարկումը, որը կարող է քայքայման հասցնել հիվանդի ընտանիքին, անապահով ծերությունը, կրթություն ստանալու գործում աշխատավորների երեխաների համար գոյություն ունեցող վիթխարի նյութական դժվարությունները՝ այս ամենը ծնում է անվստահություն վաղվա օրվա նկատմամբ, ստորացնում է մարդկային արժանապատվությունը, պայմանավորում աշխատավոր անձի օտարացումը բուրժուական կարգի պայմաններում։

Կապիտալիստական կարգի այս իրական արմատական որակական առանձնահատկություններն էլ անտեսում են բուրժուական ապրելակերպի պրոպագանդիստները։

Տվյալ դեպքում նպատակահարմար է հատկապես կանգ առնել այն ֆենոմենի վերլուծության վրա, որը բուրժուական սոցիոլոգների աշխատություններում ընդունված է անվանել բարձր սպառման, «առատության» հասարակություն և որը ուժգնորեն ռեկլամվում է որպես ամբողջ արևմտյան ապրելակերպի անխուսափելի ատրիբուտ։

Իրոք, Արևմուտքի ինդուստրիալ առումով զարգացած մի շարք երկրների ապահովված որոշ խավեր հնարավորություն ունեն գնալով ավելի ու ավելի մեծ մասշտաբներով և նրբորեն սպառել, բավարարել իրենց պահանջմունքները և այլանդակ քմահաճույքները։ Սակայն, այստեղ կարևոր է ուշադրություն դարձնել այն բանի վրա, որ, խոսելով «բարձր սպառման» հասարակության «կենսաորակի» մասին, բուրժուական գաղափարախոսները, որպես կանոն, խոսքով պայքարում են լիիրավ և մարդու համար արժանի կյանքի համար, այդ կյանքում վեհ նպատակների հասնելու համար և այլն։ Բայց այդ մարդասիրական հոգևոր արժույթներով ապահովվո՞ւմ են արդյոք գոնե ունևոր խավերը՝ մասնավոր սեփականատիրական հարաբերությունների պայմաններում։

Ակներևության միտումով օգտագործենք արվեստի բնագավառից առնված վկայությունը։ Վերջերս ես դիտեցի Մարկո Ֆերրերիի «Մեծ որկրամոլություն» կինոնկարը։ Կարելի է վիճել ֆիլմի արժանիքների ու թե-



րությունների մասին, բայց այնտեղ բավական նատուրալիստորեն պատկերված է արվում այսպես կոչված սպառողական հասարակության ունևոր ներկայացուցիչների ապրելակերպը։ Նրանք, իհարկե, ի վիճակի են զբաղվելու որկրամոլությամբ։ Նրանք կարող են անզուսպ կերպով սպառել։ Նրանք զբաղվում են այնպիսի անառակությամբ, որից փախչում են անգամ պոռնիկները, բայց որով մեծ հափշտակությամբ զբաղվում է մանկապարտեզի դաստիարակչուհին... Ի վերջո, կյանքում չտեսնելով չի մի խելացի ու վեհ նպատակ, ֆիլմի հերոսները որոշում են անձնասպան լինել, այդ բանի համար ընտրելով հիրավի սիմվոլիկ մի միջոց՝ որկրամոլությունը։

Մենք վկայակոչեցինք ֆիլմը, քանի որ այնտեղ սևեռված է բուրժուական «սպառողական հասարակության» էական բնութագիրը, որը փաստորեն բացառում է այն ամենը, ինչը Մարդուն պետք է տարբերի ընդհանրապես։ Խոսքը նրա վեհ իդեալների մասին է, ազնիվ ձգտումների, բարոյական ու հոգևոր ինքնակատարելագործման, նրա ստեղծագործական, հերոսական էության մասին, ապագա սերունդների բախտի համար անհանգստության, ընչազուրկ աշխատավորական զանգվածների հոգատարության մասին և այլն։ Սպառումը իբրև ինքնանպատակ, սպառում՝ ուրիշների հաշվին, սպառումը որպես ֆետիշ ունենում է այն օրինաչափ հետևանքը, որ այստեղ ինքը՝ կյանքն էլ է դառնում աննպատակ, անիմաստ։

Մենք այստեղ բերեցինք անխոհեմ և մարդու արժանապատվությունը ստորացնող իրադրության մի ակնբախ օրինակ միայն, որը սակայն բնորոշ է Արևմուտքի ինդուստրիալ տեսակետից զարգացած երկրների ունևոր խավերին։ Բայց մարքսիզմ-լենինիզմը խորապես բացահայտում է հասարակական այն պայմանները, որոնք նպաստում են այդ իռացիոնալ ֆենոմենին։ Ակնհայտ է, որ մարդկանց լայն խավերի մասսայական գործողությունների և հակումների անխոհեմությունը, դրանք ծնող պայմանների ստեղծումը բացատրվում են հենց սոցիալական կարգի օբյեկտիվ բնութագրերով։ Դա առաջին հերթին հարստանալու անզուսպ ձգտումն է, մասնավոր սեփականատիրական հարաբերությունների տիրապետությունը։

Շահույթի անզուսպ ձգտումը պայմանավորում է այն, որ այդ հասարակության շատ անդամների ինչպես սոցիալական, այնպես էլ անձնական հարաբերությունների համար տիպիկական է դառնում անողոք մրցակցությունը, որը հաճախ դրսևորվում է անգամ ընտանիքներում, առաջ է բերում փոխադարձ ատելություն, թշնամանք, ամեն մեկի պայքար բոլորի դեմ։ Բուրժուական կարգի արմատական դիրքորոշումը Վ. Ի. Լենինը բնորոշել է հետևյալ կերպ. «կամ դու ես կողոպտում ուրիշին, կամ ուրիշը՝ քեզ, կամ դու ես ուրիշի համար աշխատում, կամ ուրիշը՝ քեզ համար, կամ դու ստրկատեր ես, կամ ինքդ ստրուկ ես» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 31, էջ 358)։ Այս է մասնավոր սեփականատիրական կարգերի ծնած ապրելակերպի սոցիալական, բարոյական, հոգեբանական բնութագիրը։ «Սեփականատերերի աշխարհում միայնակության» այս թեման (ինչպես այն անվանել է Թոմաս Մանը), կարմիր թելի նման անցնում է հումանիստական գեղարվեստական գրականության միջով՝ սկսած Բալզակի Մարդկային կատակերգությունից ընդհուպ մինչև տարբեր երկրների ու մայրցամաքների ժամանակակից առաջադեմ գրողները։ Այդ դրության դեմ գնալով ավելի ակտիվորեն են պայքարում դեմոկրատական ուժերը, բանվոր դասակարգը, կոմունիստական կուսակցությունները հենց բուրժուական երկրներում։

Կապիտալիզմի ծնունդ հանդիսացող փոխադարձ օտարացման սիստեմը, մերկանտիլիստական կանոնների ոգով դաստիարակված մարդու հոգեկան միայնակության ողբերգականությունը նրան դրդում են ինքնամոռաց կերպով ֆետիշացնելու սպառումը, խթանում են սեփականատիրոջ հաղթության, նրա «ընտրյալության», սպառողական հզորության հիվանդագին ցանկագրգիռ զգացումը։

Այս իռացիոնալ, հակամարդասիրական դրությունը այս կամ այն ձևով հասկանում և անգամ քննադատում են հենց բուրժուական մտածողները՝ սկը-

մունիստական վերափոխումների համար, անհատի լիակատար ազատագրության և համակողմանի զարգացման համար։ Ի հակադրություն «սպառողական հասարակության» դիրքորոշումների, այստեղ կյանքի իմաստը չի հանգում միայն սպառման՝ հանուն սպառման (ձգտում նյութական լիառատության, ավելորդությունների, կուլտուրայի վերածում առևտրի օբյեկտի, հարստության կուտակում և այլն). այլ բնույթ են ստանում սպառման կառուցվածքը և հասարակական ֆունկցիաները։ Շահագործման, գործազրկության բացակայության պայմաններում, երբ սոցիալիզմը երաշխավորում է աշխատանքի և հանգստի իրավունք, ըստ աշխատանքի արդարացի վարձատրություն՝ անկախ աշխատողի սեռից ու ռասայից, ապահովում է էժանագին բնակարան (բնակարանային վարձը կազմում է աշխատավարձի մոտավորապես 5 տոկոսը), կրթության անվճար սիստեմը (ՍՍՀՄ-ում ուսուցման բոլոր տեսակների մեջ ընդգրկված է ավելի քան 80 միլիոն մարդ), առողջապահություն (բժշկական անձնակազմով ապահովվածությամբ ՍՍՀՄ-ը գրավում է առաջին տեղը աշխարհում), նորմալ մարդը չի կարող ունենալ դրամ կուտակելու, մասնավոր սեփականատեր դառնալու, հետևաբար և՝ անզուսպ սպառողականության պրոցեսով արբենալու դրդապատճառներ։ Այսպիսով, սոցիալիստական հասարակությունը ազդում է պահանջմունքների ձևավորման, դրանց աղնվացման վրա, ինդիվիդուալիզմի, էգոիզմի տարրերը բացառող խելացի կուլտուրական պահանջմունքների խթանման վրա։

Սոցիալիզմը նպաստում է այն բանին, որ մարդը ձեռք է բերում վստահություն վաղվա օրվա նկատմամբ, սոցիալական լավատեսություն, ձգտում դեպի ապագա։ Նրա հասարակական հեղինակությունը որոշում են միայն անձնական հատկությունները, անձնական աշխատանքը, այն արժեքների չափը, որ նա տալիս է հասարակությանը։ Փոփոխվում են նաև մարդկանց միջև հասարակական կապերի ձևերը, երևան են գալիս կենսական նոր իդեալներ ու նպատակներ՝ կոլեկտիվիզմ, ընկերական վերաբերմունք միմյանց նկատմամբ, փոխադարձ օգնություն և աջակցություն, մերժվում են արհամարհանքը հասարակական բարօրության նկատմամբ, հասարակական պասիվությունը, առավել ևս՝ հակահասարակական գործողությունները (այդ թվում հասարակության հաշվին ապրելու, ուրիշներին խաբելու ձգտում և այլն), զանազան նախապաշարմունքների, վատառողջ բնազդների չարաշահումը։

Այստեղ ամեն ինչ հանգեցնում է այն բանին, որ գնալով ավելի լայնորեն է տարածվում կյանքի իմաստի կոլեկտիվիստական, կոմունիստական ըմբռնումը, որն անհամատեղելի է քաղքենիական-էգոիստական, սպառողական հոգեբանության հետ, իրերի պաշտամունքի՝ այդ վանող հակահասարակական դիրքորոշման հետ, որը մարդու մեջ խլացնում է ամեն մի ազնիվ բան։ Սոցիալիստական ապրելակերպը մարդուն պաշտպանում է այն ամենից, ինչը կաշկանդում և քայքայում է նրա ինտելեկտը, կամքն ու հույզերը, խանգարում է իրական հոգևոր հարստացմանը, իրական երջանկությանը։ Իրենք՝ հասարակական պայմանները բնակչության լայն զանգվածներին մոտեցնում են գիտության, կուլտուրայի, արվեստի արժեքներին հաղորդակից դառնալու անհրաժեշտությանը և վիթխարի հնարավորություններ ստեղծում հոգևոր անսահման հարստացման ու կատարելագործման համար։

Կոմունիստական կուսակցությունը, որը գլխավորում է նոր հասարակարգի կառուցման պրոցեսը, նրա պատմական առավելությունների հաստատման ու զարգացման պրոցեսը, ձգտում է, հաշվի առնելով ձեռք բերված էտապի առանձնահատկությունները, գտնել սոցիալիզմի պոտենցիաների իրականացման նոր հնարավորություններ, նոր ռեզերվներ, այն է՝ պատմության մեջ առաջին անգամ իր առջև դնել սոցիալական մեծ նպատակներ, առաջադրել զարգացման գիտականորեն հիմնավորված պլաններ, կազմակերպել մասսաների գործունեությունը այդ պլանների գիտակցական իրականացման համար, համակենտրոնացնել, մոբիլիզացնել հասարակության հոգևոր ու նյութական ռեսուրսները՝ հասունացած պրոբլեմների առավել խելացի, կոմպլեքսային ու



արագ լուծման համար։ Սովետական Միության աշխատավորները այժմ վրձռում են երկրի արտադրողական ուժերի զգալի վերելքի, ժողովրդի նյութական բարեկեցությունը է՛լ ավելի բարձրացնելու, տնտեսության սոցիալիստական սիստեմի առավելությունները գիտատեխնիկական հեղափոխության նվաճումների հետ միացնելու բարդ խնդիրները, որ առաջադրել է ՍՄԿԿ XXIV համագումարը։ Սոցիալական առաջադիմությունը, սոցիալիզմի օբյեկտիվ առավելությունները կենսագործվում են ամենևին ոչ ինքնաբերաբար. անհրաժեշտ է կազմակերպել մասսաների, ամեն մի աշխատողի համառ ու լարված գործունեությունը՝ կապված երկրի բոլոր պոտենցիաների խելացի օգտագործման հետ, մեր զարգացմանը խանգարող ամեն մի խոչընդոտի դեմ մղվող եռանդուն պայքարի հետ։ Առաջընթացի սոցիալիստական տիպի ծավալմանը նպաստում են նաև նոր ապրելակերպի սկզբունքային առավելությունների խոր գիտակցումը և նրա քանակական ու որակական բնութագրերի ներդաշնակ զուգակցումը։ Մարքս-լենինյան տեսության կողմից բացահայտված ու հիմնավորված նոր ապրելակերպի սկզբունքների անշեղ ու հետևողական իրականացումը սովետական մարդկանց բովանդակալից կյանքի գրավականն է, սոցիալական առաջադիմության ուղիով մեր հասարակության հետագա առաջընթացի գրավականը։

Մոսկվա

# ՊՐՈԳՆՈԶԱՎՈՐՈՒՄԸ ՈՐՊԵՍ ԳԻՏԱԿԱՆ ԿԱՆԽԱՏԵՍՄԱՆ ՁԵՎ

**Հ. Ս. ՎԱՐԴԱՆՅԱՆ**
Կառավարման ճյուղային ավտոմատացված սիստեմների համամիութենական գիտահետազոտական և նախագծային ինստիտուտի ավագ գիտաշխատող

ԿԱՆԽԱՏԵՍԵԼՈՒ ՈՒՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ ՄԱՐԴՈՒ մտավոր գործունեության է, մարդկային գիտակցության հիմնական ֆունկցիաներից մեկը։ Այն բխում է մարդկային գիտակցության՝ իրականությունը «կանխապես արտացոլելու» ընդհանուր ունակությունից։ Կանխատեսելու որակապես սպեցիֆիկ ունակությունը ձևավորվել է մարդու գիտակցության զարգացման հետ միասին՝ հասարակական-արտադրական գործունեության պրոցեսում։

Երկար ժամանակ կանխատեսումը կրում էր էմպիրիկ, ոչ գիտական բնույթ, հիմնվում մարդկանց ամենօրյա փորձի, փաստացի կամ կարծեցյալ փոխադարձ կապի և կանոնադրության վրա։ Էմպիրիկ կանխատեսումը տեսականորեն հիմնավորված և փորձով գնահատված չէ, այն անտեսում է պրոցեսների օրինաչափությունները։

Գիտության ծագման ու զարգացման շնորհիվ կանխատեսումները աստիճանաբար գիտական բնույթ ստացան։ Գիտական կանխատեսումը առօրյա պրակտիկ գործունեության պրոցեսում իրականացվող կանխատեսումից տարբերվում է, ամենից առաջ, առաջադրույթների բնույթով (որոնց հիման վրա կառուցվում է), իրականացման մեխանիզմով, ինչպես նաև արդյունքների խորությամբ, ճշտությամբ ու նույնականությամբ[1]։ Կանխատեսման համար հարկավոր է, համակողմանի վերլուծելով քննարկվող պրոցեսի կամ օբյեկտի անցյալ ու ներկա վիճակները, բացահայտել դրանց հատուկ օբյեկտիվ օրինաչափությունները։

Այսպիսով, գիտական կանխատեսումը կարելի է բնորոշել որպես ենթադրություն պրոցեսի կամ օբյեկտի ապագա վիճակի մասին, որը հենվում է ձևակերպված տեսությունների, օրենքների, հիպոթեզների, ինչպես նաև դրանց իրականացման օրինաչափությունների և պայմանների տեսական սիստեմատիկ վերլուծության վրա։

Պատմությանը հայտնի են ականավոր մտածողների բազմաթիվ հանճարեղ կանխատեսումներ։ Այսպես, դեռ ֆեոդալական հասարակարգի պայմաններում անգլիացի գիտնական Ռոջերս Բեկոնը կանխագուշակել էր, որ ապագայում երևան են գալու ու լայնորեն տարածվելու ինքնագնաց փոխադրամիջոցներ (ցամաքով, ջրով և օդով)։ Իտալացի մեծ գիտնական Լեոնարդո դա Վինչիին է պատկանում տատանողական շարժման գաղափարը, որը հիմք հանդիսացավ լուսային, ջերմային և մագնիսական երևույթների բնույթը բացատրելու համար։

Գիտական փայլուն կանխատեսման օրինակ է ռուս հայտնի գիտնական



Վ. Ի. Վեռնադսկու դեռևս 1910 թ. արտահայտած այն միտքը, որ ռադիոակտիվության երևույթների մեջ մարդկությունը ձեռք է բերում էներգիայի այնպիսի աղբյուրներ, որոնք միլիոն անգամ գերազանցում են մեր պատկերացումները։ Ավելի ուշ նա գրել է. «Այդ բանը կարող է պատահել մոտակա տարիներին, գուցե և մի հարյուրամյակ հետո։ Սակայն պարզ է, որ այդ կլինի»[2]։

Պակաս հանճարեղ չէր նաև ռուս մեծ գիտնական Դ. Ի. Մենդելեևի կանխատեսումը։ Ելնելով ատոմային կշիռների իր նշանավոր սիստեմից, նա անսխալ կանխագուշակեց մի ամբողջ շարք քիմիական տարրերի երևան գալը։

Կարելի է բերել իսկական գիտական կանխատեսման մի շարք օրինակներ ևս բնագիտության բնագավառից, որոնք կապված են մեծ հայտնագործողներ Ա. Էյնշտեյնի, Կ. Է. Ցիոլկովսկու, Ի. Ի. Մեչնիկովի և այլոց անունների հետ։ Բայց պատմության մեջ քիչ չեն նաև այն դեպքերը, երբ գիտնականների կանխագուշակումները անհիմն են եղել։ Նման կանխագուշակումների թվին կարելի է դասել, օրինակ, ամերիկացի ֆուտուրոլոգ Ջիլֆիլլանի Հայտնագործությունների կանխագուշակումը աշխատությունը[3]։ Հենվելով մեծ գյուտարարներ Էդիսոնի, Շտայնմեցի և ուրիշների հետևությունների վրա, Ջիլֆիլլանը, օրինակ, «հայտնագործել է» իր սեփական կանխատեսումը՝ մշուշի մեջ ապագա տեղափոխությունների վերաբերյալ։ Այդ «կանխատեսման» մեջ կային մշուշի մեջ տեղափոխությունը ապահովող 25 ամենաաներևակայելի եղանակներ, որոնցից ոչ մեկը թեկուզ ինչ-որ չափով կապված չէր միակ արդյունավետ՝ ռադարային սարքի ապագա հայտնագործման հետ[4]։

Առանձին բարդությամբ են աչքի ընկնում սոցիալ-տնտեսական և քաղաքական կանխատեսման պրոբլեմները։ Սակայն, հենց այս բնագավառի հաջողություններն են առավել կապված հետազոտության պրոցեսի կամ օբյեկտի նկատմամբ գիտական մոտեցման հետ։ Հայտնի է, թե հասարակության զարգացման ուղիների կանխատեսման ինչ փայլուն օրինակ է մարքսիզմ-լենինիզմի տեսությունը։

Կապիտալիստական արտադրահարաբերությունների խոր վերլուծությամբ Կ. Մարքսը հայտնագործեց և ձևակերպեց կապիտալիստական հասարակարգի զարգացման օրենքները։ Դրանք էլ հնարավորություն տվեցին կանխատեսելու հասարակական զարգացման հետագա ընթացքը, անառարկելիորեն հիմնավորելով պրոլետարիատի դիկտատուրայի ապագա հաղթանակը։

Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի գործի հանճարեղ շարունակող Վ. Ի. Լենինը մշակեց ու ստեղծեց սոցիալիստական հեղափոխության տեսությունը՝ հենվելով մի շարք կարևորագույն հայտնագործությունների վրա, որոնց թվին է պատկանում իմպերիալիզմի դարաշրջանում կապիտալիզմի տնտեսական ու քաղաքական զարգացման անհամաչափության օրենքը։ Հենց այդ օրենքից ելնելով, մեծ մտածողը արեց պատմական վիթխարի նշանակություն ունեցող գիտական կանխատեսում այն մասին, որ «...սոցիալիզմը չի կարող հաղթել բոլոր երկրներում միաժամանակ։ Նա կհաղթի սկզբում մեկ կամ մի քանի երկրներում...»[5]։

Սկզբնավորելով հասարակական գիտական կանխատեսման հիմքերը, հեղափոխության առաջնորդը մեծ նշանակություն էր տալիս պատմականության սկզբունքին։ Նա գրել է. «...չմոռանալ հիմնական պատմական կապը, յուրաքանչյուր հարցի նայել այն տեսակետից, թե ինչպես է որոշ երևույթ պատմության մեջ ծագել, իր զարգացման ընթացքում ինչ գլխավոր էտապներ է անցել այդ երևույթը, և նրա այդ զարգացման տեսակետից նայել, թե տվյալ բանն ինչ է դարձել այժմ»[6]։ Փաստորեն, Վ. Ի. Լենինի այդ դրույթի մեջ ձևակերպված են այն հիմնական մեթոդոլոգիական պահանջները, որոնք ներկայացվում են զարգացող պրոցեսների գիտական կանխատեսմանը։

Կ. Մարքսը, Ֆ. Էնգելսը, Վ. Ի. Լենինը հայտնագործել են սոցիալական սիստեմների զարգացման և գործունեության մատերիալիստական օրենքները, դրանով իսկ ստեղծելով հասարակության պատմության ուսումնասիրման գիտական մեթոդոլոգիան։ Այն ենթադրում է մի շարք մասնակի գիտական մեթոդների մշակման ու օգտագործման, ինչպես և գիտական նոր տվյալների

հիման վրա պրոգնոզավորման տեսության ու պրակտիկայի զարգացման ան-
հրաժեշտությունը։

Մենք անցյալն ու ներկան դիտում ենք ապագայի պրիզմայի միջով։ Այդ
առնչությամբ ապագան ներկայանում է ոչ թե որպես ճակատագրական, կան-
խորոշված, դրսից տրված ինչ-որ մի բան, այլ որպես մի նպատակադիր ար-
դյունք, որ հասարակությունն ընդունակ է պրակտիկորեն կենսագործել իրա-
կանության մեջ[7]։

Գիտական կանխատեսման հասկացությունը սերտորեն առնչվում է պրոգ-
նոզավորումը։ Կանխատեսման ձևերի և ապագայի ձևավորման փոխհարաբե-
րության պրոբլեմի առկա մշակումները դեռևս անբավարար են։ Շատ հաճախ
շփոթում և նույնացնում են գիտական կանխատեսումն ու պրոգնոզավորումը։
Այժմ կան պրոգնոզի բազմաթիվ ու բազմապիսի բնորոշումներ։ Օրինակ, այն
բնութագրվում է որպես «ապագայի գիտականորեն հիմնավորված կանխագու-
շակում», «ապագայի տեսություն», «ապագայի գնահատում», տվյալ պրոցեսի
կամ օբյեկտի զարգացման «հեռանկարների գնահատում» և այլն։ Այս բնորո-
շումների գերակշիռ մասն ամեն մի գիտական կանխատեսում դիտում է որպես
պրոգնոզ, չի սահմանազատում գիտական կանխատեսման տեսակները։ Այս-
պես, Փիլիսոփայություն և պրոգնոստիկա գրքում պրոգնոզը բնորոշվում է որ-
պես «...իրերի նախկինում անհայտ վիճակի մասին արտահայտված կարծիք,
որ մենք ստանում ենք գիտական տեսության շրջանակներում որպես արդյունք,
որպես եզրակացություն՝ հայտնի կամ հիմնավորված ենթադրություններից
արված հետևության հիման վրա»[8]։

Պրոգնոզավորումը օբյեկտի կամ պրոցեսի ապագա վիճակի մասին նոր
ինֆորմացիա հաղորդելու ստեղծագործական պրոցես է՝ հիմնված արդի գիտու-
թյան նվաճումների օգտագործմամբ դրանց հեռանկարների, զարգացման ռիթ-
մի, տեմպի և ժամկետների օբյեկտիվ հետազոտության վրա։ Հարկ է նշել, որ
«նոր ինֆորմացիան» ներառում է ո՛չ միայն պրոգնոզավորվող պրոցեսի կամ
օբյեկտի բնութագրերի ուղղակի արտամիջարկմամբ ստացվող ինֆորմացիան,
այլ նաև այն, ինչ կարող է ստացվել այդ բնութագրերի փոփոխման վերլուծու-
թյան ժամանակ, հաշվի առնելով նոր հիպոթեզները։

Այսպիսով, «պրոգնոզը» նոր, գիտականորեն հիմնավորված ինֆորմացիա
է պրոցեսի կամ օբյեկտի ապագա վիճակի մասին, իսկ «պրոգնոստիկան» գի-
տական դիսցիպլին է, որն ուսումնասիրում և մշակում է պրոցեսի կամ օբյեկ-
տի ապագա վիճակի մասին նոր ինֆորմացիա ստանալու ընթացքի ընդհա-
նուր սկզբունքներն ու մեթոդները։

Մեր կարծիքով, պրոգնոզը պետք է բովանդակի հետևյալ հիմնական տար-
րերը.

ա) պրոցեսի կամ օբյեկտի ապագա վիճակի հնարավոր որակական գնա-
հատում.

բ) պրոգնոզվող երևույթի իրականանալու հավանականությունը գնահա-
տելու հնարավորություն.

գ) կանխագուշակվող իրադարձությունների, երևույթների կամ պրոցեսնե-
րի տարածական-ժամանակային տեղայնացում։

Հենց այս տարրերի հիման վրա էլ այստեղ տարանջատվում են պրոգնո-
զավորումը և գիտական կանխատեսումը։ Վերջինս անհամեմատ ավելի լայն
հասկացություն է։ Գիտական կանխատեսումն ու պրոգնոզավորումը այնպիսի
կատեգորիաներ են, որոնք արտահայտում են ապագայի մասին ինֆորմացիա
ստանալու պրոցեսը։ Սակայն դրանք նույնական չեն։ Գիտական կանխատեսու-
մը գերազանցապես կրում է որակական ու հավաստի բնույթ և վերաբերում է
բնական ու հասարակական պրոցեսների կամ երևույթների ավելի համապար-
փակ ասպեկտներին։ Պրոգնոզավորումը սովորաբար վերաբերում է բնական և
հասարակական երևույթների ավելի մասնավոր ասպեկտներին, որը հնարա-
վորություն է տալիս ճշգրտումներ մտցնել համապարփակ կանխատեսման մեջ՝
արագ փոփոխվող պայմաններին համապատասխան։ Պրոգնոզավորումը պա-
հանջում է քանակական որոշակի ցուցանիշներ և կրում է հավանակային



բնույթ, ուստի այն անհնար է առանց հաշվարկման ու մոդելավորման մաթե-
մատիկական մեթոդների լայն կիրառման։

Պրոգնոզը միշտ պետք է ունենա հստակորեն որոշված տարածական սահ-
մաններ, իսկ պրոգնոզավորումը պետք է կատարվի տարածական-ժամանա-
կային կոորդինատների որոշակի սիստեմում։ Պրոգնոզավորելիս անհրաժեշտ
է, նախ, որոշել, թե տարածական ինչ սիստեմ է պրոգնոզման առարկան, և
երկրորդ, թե ինչ ժամանակահատվածում է անհրաժեշտ քննարկել այդ օբյեկտի
զարգացումը, այսինքն՝ որոշել տարածական-ժամանակային կոորդինատների
սիստեմը։

Պրոգնոզի գիտականությունն ու հավաստիությունը որոշվում են պրոցեսի
կամ օբյեկտի, նրանց էության, կառուցվածքի, արտաքին ու ներքին կապերի
ու օրինաչափությունների իմացության աստիճանով։

Պրոցեսի կամ օբյեկտի ապագա վիճակը պրոգնոզավորելիս, ամենից
առաջ, հարց է ծագում՝ ինչպես վերլուծել և դիագնոզել անցյալն ու ներկան։
Պրոգնոզավորողը միշտ հարկադրված է լինում միակցել դիալեկտիկորեն հա-
կասական մեթոդական պահանջները։

Պրոգնոզավորումը պահանջում է տեղի ունեցող պրոցեսներից աբստրահ-
վելու ընդունակություն։ Ապագա երևույթը ներկայի կամ անցյալի երևույթների
հասարակ զուգորդում չէ. այն չի բացահայտվում ներկայի առանձնահատկու-
թյունները մեխանիկորեն ապագա փոխադրելու միջոցով։ Մյուս կողմից, պրո-
ցեսի կամ օբյեկտի ապագան, իհարկե, կարող է ըմբռնվել միայն նրա անցյա-
լի ու ներկայի վերլուծմամբ։ Այստեղ ևս կա դիալեկտիկական հակասու-
թյուն, որը պետք է հաղթահարվի։ Նման հակասություններ ծագում են ինչպես
ժամանակին և բավարար չափով լրիվ պրոգնոզավորված ինֆորմացիա ունե-
նալու անհրաժեշտության, այնպես էլ պրոգնոզի արժանահավատության և նրա
լրիվության աստիճանի միջև։

Բարդ սիստեմները պրոգնոզավորելիս անհրաժեշտ է հաշվի առնել, որ
դրանցում տեղի ունեցող պրոցեսները արդյունք են առանձին ենթասիստեմնե-
րի փոխգործողության, որոնք ունեն զարգացման սեփական օրինաչափություն-
ներ, այսինքն՝ սիստեմների ընդհանուր օրինաչափություններն ավելի մասնա-
վոր և կոնկրետ տենդենցների դրսևորում են։ Պրոգնոզներ մշակելու ժամանակ
անհրաժեշտ է պարզել սիստեմի ագրեգատային և բաղկացուցիչ մասերի միջև
եղած փոխադարձ կապը, մասնակիի և ընդհանուրի հարաբերակցությունը։
Ընդսմին, որքան ավելի երկարատև է պրոգնոզավորման ժամանակաշրջանը,
այնքան ավելի բարձր պետք է լինի պրոգնոզավորվող պրոցեսների հավաքման
մակարդակը։

Առանձնահատուկ նշանակություն ունի ենթասիստեմների ժամանակաշրր-
ջանների հիերարխիկ կառուցվածքի սահմանումը, քանի որ դրանից է կախված
պրոգնոզներ կազմելու հաջորդականությունը։ Այդ պրոբլեմի էությունն այն
է, որ տեղի ունեցող պրոցեսների բնույթն ու դերը կարող են վերլուծվել լոկ
բավականաչափ երկարատև հեռանկարի առկայության դեպքում։ Մյուս կող-
մից, երկարաժամկետ պրոգնոզը կարող է ռեալ լինել միայն այն դեպքում,
եթե հենվում է ընթացիկ կոնկրետ պրոցեսների վրա։ Այս երկու պահանջները
կարող են բավարարվել, եթե պրոգնոզավորումը կատարվում է աստիճանաբար
ընդլայնելու և ներկայից դեպի ապագան մտնելու, իսկ ապա՝ հակառակ վերա-
փոխման միջոցով՝ պրոգնոզները ավելի սեղմ ժամանակաշրջանների համար
ճշգրտելու նպատակով։ Սրա անհրաժեշտությունը պայմանավորված է այն
հանգամանքով, որ «պրոգնոզավորման գլխավոր խնդիրը ոչ այնքան սիստեմի
հնարավոր վիճակի ճշտորեն նշված ժամկետի որոշումն է, այլ ավելի շուտ այն,
որ օբյեկտիվ օրինաչափությունների իմացության հիման վրա կանխատեսվեն
նրա զարգացման հավանական ուղիներն ու ստադիաները, ներկայից մինչև
պրոգնոզավորման ժամանակաշրջանի վերջը»[9]։ Այս իմաստով պրոգնոզավոր-
ման պրակտիկայի համար բացառիկ նշանակություն ունի պրոգնոզավորման
ստադիաների և պրոգնոզավորող մարմինների կատարելիք պրոցեդուրաների
հաջորդականության որոշումը։

Պրոգնոզներ մշակելու ժամանակ պրոգնոզավորման սուբյեկտի գործունեությունը բաժանում են երեք ստադիաների՝ հետահայացության, դիագնոզի և պրոգնոզի:

Հետահայացության ստադիայում ուսումնասիրվում է պրոցեսի կամ օբյեկտի անցյալ վիճակը, առանձնացվում են այդ օբյեկտի կապերը ուրիշ օբյեկտների հետ, հաշվի առնվում անցյալ բնութագրերի հնարավոր փոփոխությունները: «Առաջին խնդիրը պետք է լինի՝ որոշել սիստեմի ֆունկցիոնալ բնութագրերը՝ նպատակ ունենալով պատկերացում ստանալ նրա կառուցվածքի և փոխներգործող տարրերի հարաբերության մասին»[10]: Այս ստադիայի վերջնական նպատակն է՝ ստեղծել պրոգնոզի օբյեկտի հիպոթետիկ մոտավոր մոդելը:

Դիագնոզի ստադիայում հարկավոր է որոշել պրոգնոզի նպատակը և պրոգնոզավորման սուբյեկտի հարաբերությունը պրոգնոզավորման օբյեկտի նկատմամբ:

Պրոգնոզավորման արժանահավատությունը մեծացնելու համար անհրաժեշտ է ինֆորմացիա ունենալ այն բազմապիսի գործոնների մասին, որոնք բնութագրում են օբյեկտը տարբեր կողմերից՝ անցյալում և ներկայում: Պրոգնոզավորման օբյեկտի մասին պատկերացում կազմելը մի քանի բնորոշ, բայց անջատ-անջատ ու մինչև իսկ թերի տվյալներով, որոնք հնարավորություն են տալիս արդեն ինչ-որ մի քանի հատկանիշներով ասել, թե ինչ է իրենից ներկայացնում պրոգնոզավորման օբյեկտն այժմ, կոչվում է դիագնոզ: Միայն հստակ դիագնոզն է հնարավորություն ընձեռում մեծացնելու պրոգնոզի արժանահավատությունն ու լրիվության աստիճանը: Դիագնոզի և պրոգնոզի համար անհրաժեշտ ինֆորմացիայի ստացումը այնքան ավելի դժվար կլինի, որքան ավելի կոմպլեքսային ու բարդ է տարածական-ժամանակային կոորդինատների սիստեմը, այլ կերպ ասած, որքան ավելի բարդ է պրոգնոզավորման օբյեկտը և որքան ավելի այն հեռացած է իր ներկա վիճակից: Քանակական տվյալներն այս դեպքում ավելի են կրճատվում, իսկ որակականները՝ հիմնականում դառնում են ավելի անհուսալի:

Այսպիսով, կարող ենք ասել, որ տարածական-ժամանակային կոորդինատների սիստեմի ընտրությունը պրոգնոզավորման արմատական պրոբլեմն է:

Հայտնի է, որ ժամանակային ինտերվալի («կանխատեսման ժամանակի»*) տևողության հատկանիշով պրոգնոզը կարող է լինել կարճ, միջին և երկար ժամկետների: Կարճ ժամկետի պրոգնոզի «կանխատեսման ժամանակը» կազմում է մի քանի ամսից մինչև 3 տարի, միջինը՝ 2-ից մինչև 10 տարի, երկարը՝ 7-ից մինչև 30 և ավելի տարի:

Ձևականորեն, իհարկե, կարելի է երկար, միջին և կարճ ժամկետների պրոգնոզավորումը դիտել որևէ տարածական սիստեմում, որը նկարագրում է պրոգնոզավորման օբյեկտը, բայց գործնականում ժամանակային ինտերվալի ընտրությունն անմիջականորեն կախված է պրոգնոզի օբյեկտից կամ տարածական սիստեմից, օբյեկտի էությունից և պրոգնոզավորման մեթոդներից:

Երկարաժամկետ պրոգնոզը կառուցվում է այն էական գործոնների հիման վրա, որոնք ունեն փոփոխման փոքր դինամիկա և բնութագրում են տվյալ սիստեմի էությունը: Մնացած բոլոր գործոններն առհասարակ չեն քննարկվում: Երկարաժամկետ պրոգնոզավորումը, փաստորեն, նպաստում է պրոցեսի կամ օբյեկտի ընդհանուր, համապարփակ օրինաչափությունների բացահայտմանն ապագայում, պահանջում է ճիշտ ու հիմնավորված ընտրել քննարկվող պրոցեսի կամ օբյեկտի բոլոր էական գործոնները:

Միջին ժամկետի պրոգնոզը կառուցվում է այն էական գործոնների կիրառման հիման վրա, որոնք ունեն փոփոխման ինչպես փոքր, այնպես էլ մեծ դինամիկա և տվյալ սիստեմը բնութագրում են տարբեր կողմերից: Միջին ժամկետի պրոգնոզը պահանջում է էական գործոնների մանրակրկիտ ընտրու-

* Պրոգնոզի կանխատեսման ժամանակը հաշվվում է պրոգնոզավորման սկզբից մինչև պրոգնոզավորվող իրադարձության, երևույթի կամ պրոցեսի սկզբի պահը:



թյուն, բայց դրա փոխարեն հնարավորություն է տալիս պրոգնոզավորել ավելի արժանահավատորեն և բարելավում է պրոգնոզի շատ բնութագրեր:

Կարճ ժամկետի պրոգնոզը կառուցվում է՝ հաշվի առնելով ինչպես հիմնական, այնպես էլ ոչ հիմնական այն գործոնները, որոնք ունեն ամենատարբեր աստիճանների դինամիկա և քննվող սիստեմը բնութագրում են նրանց տվյալների ամբողջության մեջ:

Իհարկե, չպետք է կարծել, թե պրոգնոզավորման օբյեկտը կարող է արտահայտվել նույնականորեն՝ տարածական կոորդինատների սիստեմի միջոցով: Վերջինս ներառում է պրոգնոզավորման օբյեկտը բնութագրող այն բազմաթիվ գործոնները, որոնք մատչելի են կողմնակի դիտողին՝ պրոգնոզողին: Ըստ էության, տարածական կոորդինատների սիստեմը «կանխատեսման ժամանակի» և այդ ընթացքում առաջացող հիպոթեզները բնութագրող գործոնների հետ միասին կազմում են պրոգնոզավորման իդեալական մոդելը՝ պրոգնոզավորման տարածական-ժամանակային կոորդինատների սիստեմը:

Պրոգնոզավորման իրական մոդելը նույնական է իդեալական մոդելին, այն երբեք իր մեջ չի ընդգրկի իդեալական մոդելի բոլոր բաղադրամասերը, որովհետև սկզբունքորեն հնարավոր չէ բացահայտել բոլոր հիպոթեզները:

Եվ, վերջապես, ժամանակային ինտերվալի ընտրությունը անուղղակիորեն կախված է պրոգնոզավորման մեթոդից: Այսպես, ինտուիտիվ պրոգնոզավորման մեթոդները, ի տարբերություն տնտեսականի, գործնականորեն սահմանափակումներ չունեն ոչ օբյեկտի, ոչ էլ «կանխատեսման ժամանակի» ընտրության տեսակետից:

### ՕԳՏԱԳՈՐԾՎԱԾ ԱՂԲՅՈՒՐՆԵՐ

1 Տե՛ս В. Г. Виноградов, С. И. Гончарук, «Законы общества и научное предвидение», изд-во Полит. литературы, М., 1972, стр. 15.

2 «Очерки и речи академика В. И. Вернадского», ч. II. 1922 г., стр. 37.

3 S. C. Gilfillan. The Prediction of inventions. Us Netional Resources Committee-Technological Trends and National Policy. Part one, Section 2, 1937, p. 15-23.

4 А. Н. Покровский, «Прогнозы без плана», «Знание», М., 1972, стр. 10.

5 Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 23, էջ 94:

6 Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 29, էջ 582:

7. Տե՛ս А. Ахиезер, «Научно-техническая революция и управление развитием общества», «Вопросы философии», 1968 г., № 8, стр. 22.

8 А. Бауэр и др., «Философия и прогностика», «Прогресс», М., 1971 г.

9 Н. Стефанов и др., «Управление, моделирование, прогнозирование», «Экономика», М., 1972 г., стр. 113.

10. Ф. де Ханика, «Новые идеи в области управления», М., «Прогресс», 1969 г., стр. 36.

## ՍՄԿԿ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻՆ ԸՆԴԱՌԱՋ

# ԹԱԼԻՆԻ ԱՅԳԵԳՈՐԾՈՒԹՅԱՆ ԱՅՍՕՐՆ ՈՒ ՎԱՂԸ

**Պ. Մ. ԽԱՉԱՏՐՅԱՆ**
ՀԿԿ Թալինի շրջկոմի առաջին քարտուղար

Մեր երկրի աշխատավորները խանդավառությամբ արձագանքեցին կուսակցության հերթական XXV համագումարը հրավիրելու վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի որոշմանը և պայքարում են այն նշանավորել հանրային արտադրության արդյունավետության բարձրացման գործում ձեռք բերած հաջողություններով: Ամենուրեք սոցիալիստական գործարար մրցություն է ծավալվել իններորդ հնգամյակի պետական առաջադրանքները կատարելու և գերակատարելու նպատակով: Այդ մրցությանը նոր թափ հաղորդեց «ՍՄԿԿ XXV համագումարն արժանավայել դիմավորելու համար ծավալված համաժողովրդական սոցիալիստական մրցության մասին» ՍՄԿԿ Կենտկոմի վերջերս ընդունած որոշումը: Այդ որոշմամբ պահանջվում է մրցությունն այնպես կազմակերպել, որ յուրաքանչյուր կոլեկտիվ ու աշխատավոր իր բարձրարտադրողական, անձնվեր աշխատանքով ծանրակշիռ ավանդ մուծի արտադրական պլանների ու սոցիալիստական պարտավորությունների կատարման գործում:

Կուսակցության մեծ համաժողովը պատվով դիմավորելու համար ծավալված սոցիալիստական մրցությանը ակտիվորեն են մասնակցում նաև մեր շրջանի այգեգործները: Այս հոդվածում կխոսվի նրանց լավ գործերի, հոգսերի ու այգեգործության զարգացման հեռանկարների մասին:

Այգեգործությունը մեր շրջանի գյուղատնտեսության հեռանկարային ճյուղերից է: Անցյալում թալինցու համար այն միայն երազանք է եղել, նույնիսկ ասել են թե Թալինում վազ ու ծառի արմատ պահող հող չկա: Մինչդեռ, իրականում, պտղաբերման ունակ շատ հող կար, մի ամբողջ հարթություն, որը, սակայն, ղռեր էր կոչվում: Այսինքն՝ անկյանք, անպտուղ: Եվ այսպես՝ դարեր շարունակ: Ասենք պետք էլ չէ հեռու գնալ: Ընդամենը երկու տասնամյակ առաջ օշինդրն ու փուշն էին կազմում ղռերի բուսական աշխարհը: Իսկ ա՞յժմ...

Շոգից բովված հողը կանաչով պատելու համար նախ պետք էր մեղմել նրա դարավոր ծարավը: Եվ եկավ ժամանակը. մարդիկ բահերով, լինգ ու քլունգով զինված, շարժվեցին դեպի Ախուրյան գետը: Բայց շուտով պայթեց պատերազմը, և Թալինի մայր ջրանցքի առաջին հերթի շինարարները մեկնեցին ռազմաճակատ՝ հայրենիքը պաշտպանելու: Մեկնեցին, բայց շինարարությունը կանգ չառավ: Մարդիկ համառորեն պատնեշեցին Ախուրյանի որձաքար ափը, ջրի հոսքն ուղղեցին դեպի արևակեզ հարթություն. 1953 թ. Թալինի ջրանցքի առաջին հերթը պատրաստ էր:

Կենարար ջուրը կենդանություն տվեց անապատին: Եվ մինչև այն կլցվեր կանաչի ու ծաղկի բույրով, հիմնադրվեցին Արագած, Արտենի, Քարակերտ և Դալարիկ ավանները, որտեղ հետագայում ստեղծվեցին այգեգործական խոշոր տնտեսություններ:

Սոսկ տքնաջան աշխատանքով հնարավոր եղավ նվաճել ղռերը, դրանց անհրապույր ու տխուր գորշությունը վերածել խնձորի, ծիրանի, դեղձի, սալորի և խաղողի այգիների: Այժմ արդեն շրջանի տնտեսություններն ունեն ավելի քան 2.200 հեկտար խաղողի և 1.450 հեկտար պտղատու այգի: Թալինն այսօր հանրապետության այգեգործական ճանաչված շրջաններից է: Խաղողագործության բազայի վրա հիմք դրվեց գինեգործությանը: Արտենիի գինու գործարանը տարեկան վերամշակում է 100 հազար տոննայից ավելի խաղողի հումք: Նրա անուշահամ գինիների համբավը դուրս է եկել հանրապետության սահմաններից:

Շրջանի այգեգործության առաջնեկը Արագածի սովխոզն է: Այստեղ խաղողի առաջին կորոնը, ծիրանենու առաջին տնկին հողին ամրացվեցին 1956 թ. գարնանը: Այդ տարի հիմնվեց 16 հեկտար խաղողի և 20 հեկտար պտղատու այգի: Հետո արագորեն ընդարձակվեցին այգիները. 1960 թ. արդեն սովխոզն ուներ խաղողի և պտղի արտադրության պետական պլան: Եվ դա այգեգործության մթերքների արտադրության շրջանի առաջին պլանն էր, որը պատվով կատարվեց: Իսկ 1965 թ. տնտեսությունն ստացավ իր առաջին պարգևը՝ Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի պատվոգիրը: Եվ դա նաև շրջանի այգեգործների առաջին պարգևն էր: Այժմ արդեն տնտեսությունն ունի 475 հեկտար խաղողի, 288 հեկտար պտղատու այգի:

Թեև այգեգործությունը թալինցիներին անծանոթ էր, իսկ մասնագետները սակավաթիվ էին, բայց այդ ամենը չխանգարեց նրանց՝ համեմատաբար կարճ ժամանակամիջոցում դառնալու հմուտ խաղողագործներ ու պտղաբույծներ: Դրան նպաստեց ո՛չ միայն պրակտիկ աշխատանքում ձեռք բերած փորձը, այլև հետևողական ուսուցումը:

Գաղտնիք չէ, որ ամեն մի բնագավառի հաջողություն պայմանավորված է նախ աշխատողների մասնագիտական պատշաճ պատրաստվածությամբ: Կուսշրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները, գլխավորելով այգիների հիմնման և այգեգործության զարգացման գործը, գտնում էին, որ հողն ու ջուրը բավական չեն առատ բերք ստանալու համար, առաջին հերթին, հարկավոր են դրանց «լեզուն» լավ իմացող մարդիկ: Հետևաբար, հարկ էր բարձրացնել այգեգործների մասնագիտական որակավորումը, նրանց ծանոթացնել վազի ու ծառի մշակության ագրոտեխնիկային, դրանց հետ վարվելու «գաղտնիքներին»: Այդ իսկ նպատակով Արագածի, Դալարիկի, Քարակերտի և Արտենիի սովխոզների սկզբնական կուսկազմակերպությունները, կուսշրջկոմի աջակցությամբ, հնգամյակի տարիներին ստեղծեցին այգեգործական ժողովրդական համալսարաններ, որտեղ մի քանի հարյուրից ավելի բանվորներ, բրիգադավարներ ու մասնագետներ ուսումնասիրում էին խաղողի և պտղատու ծառերի մշակության ագրոտեխնիկան, հանրապետության առաջավոր այգեգործների փորձը, առաջատար տնտեսություններում կիրառվող մշակության արդյունավետ ձևերն ու մեթոդները: Հանրապետության ճանաչված գիտնականներն ու մասնագետներն ունկնդիրների առջև պարբերաբար հանդես էին գալիս դասախոսություններով, նրանց ծանոթացնում գյուղատնտեսական գիտության նվաճումներին:

Ժողովրդական համալսարանից դատ, Արագածում, սովխոզի կուսբյուրոյի նախաձեռնությամբ, ստեղծվեցին նաև ագրոխմբակներ, որտեղ 200-ից ավելի բանվորներ, մեխանիզատորներ և մասնագետներ հարստացրին այգեգործության վերաբերյալ իրենց գիտելիքները, բարձրացրին մասնագիտական որակավորումը:

# ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ՍՏԵՂԾԱԳՈՐԾԱԿԱՆ ՆԱԽԱՁԵՌՆՈՒԹՅԱՆ ՈՒԺԸ

**Ե. Լ. ԱԲՐԱՀԱՄՅԱՆ**
ՀԿԿ Կենտկոմի թեթև և սննդի արդյունաբերության բաժնի վարիչի տեղակալ

ԿՅԱՆՔԸ ԼԻՈՎԻՆ ՀԱՍՏԱՏԵՑ, որ կուսակցության XXIV համագումարի մշակած տնտեսական քաղաքականությունը խոր և բազմակողմանիորեն արտացոլում է սոցիալիզմի տնտեսական օրենքների պահանջները, սոցիալիստական տնտեսվարության ոլորտում մասսաների ընդհանրացրած փորձը, որը կոչված է ապահովելու արտադրության սոցիալիստական եղանակի առավելությունների ավելի լրիվ օգտագործումը:

Եթե անցյալում, յուրաքանչյուր հնգամյակի ընթացքում աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին արտադրության ծավալի աճը կազմում էր 40—60 տոկոս, ապա իններորդ հնգամյակում արդյունաբերության մեջ արտադրանքի աճի 87 տոկոսն ստացվում է աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին:

Աշխատանքի արտադրողականության աճի տեմպերն արագացնելու վերաբերյալ կուսակցության առաջադրած խնդիրների լուծումն ունի սկզբունքային քաղաքական նշանակություն: «Աշխատավորների բարեկեցության բարձրացումը համարելով գլխավոր խնդիր,— նշում է Լ. Ի. Բրեժնևը,— չի կարելի, անշուշտ, դրան մոտենալ պարզունակ կերպով... Մեր պլանների ուժը, դրանց ռեալության գրավականն այն է, որ դրանք կենսամակարդակի բարձրացումը անխզելիորեն կապում են հանրային արտադրության վերելքի, աշխատանքի արտադրողականության բարձրացման հետ» (Լենինյան կուրսով, հ. 3, էջ 321): Այս կարևորագույն ցուցանիշի վերաբերյալ հնգամյակի առաջադրանքների կատարումը պահանջում է կազմակերպական լարված աշխատանք, տնտեսության կուսակցական ղեկավարման ուժեղացում:

Տնտեսական շինարարության կուսակցական ղեկավարման հիմնական սկզբունքներից մեկը մասսաների աշխատանքային և քաղաքական ակտիվության զարգացումն է: Տնտեսության կուսակցական ղեկավարությունն անհնար է առանց աշխատավորների ստեղծագործական նախաձեռնության և ակտիվության պատշաճ զարգացման: Հանրահայտ ճշմարտություն է՝ ժողովուրդն է նոր հասարակարգ կառուցող վճռական ուժը: Այն պատկերացումը, թե կոմունիզմ կարելի է կառուցել միայն կուսակցության անդամների ձեռքերով, Վ. Ի. Լենինը համարում էր ուտոպիա: «Հարկավոր է գլխավորել մասսաներին,— ասում էր նա,— այլապես մենք մի կաթիլ ենք ծովում» (Երկեր, հ. 36, էջ 665):

Ելնելով մարքս-լենինյան այդ դրույթից, կուսակցությունը ձգտում է, որ ամեն աշխատող ցուցաբերի քաղաքական ակտիվություն, մասնակցի տնտեսական պլանների մշակմանը, արտադրական հարցերի լուծմանը, տնտեսական ղեկավարության մարմինների կազմավորմանը, ձեռնարկության, հետևաբար նաև՝ ամբողջ արտադրության կառավարմանը:

ՍՄԿԿ XXIV համագումարն այս խնդիրը դրեց բոլոր կուսակցական կազ-



մակերպությունների առջև: «Մեր պարտքն է,— նշվում է ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ,— է՛լ ավելի լրիվ չափով կենսագործել լենինյան պատգամները, հասնել այն բանին, որ բոլոր բանվորները, կոլտնտեսականները, մտավորականները դառնան կուսակցության տնտեսական քաղաքականության իրականացման գիտակից մարտիկներ, գործեն որպես պետական մարդիկ, լիովին դրսևորելով իրենց ունակությունները, նախաձեռնությունը, տնտեսական ձեռներեցությունը» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 94):

Մեր հասարակության զարգացման բոլոր փուլերում սոցիալիստական մրցությունը եղել ու մնում է որպես մասսաների ստեղծագործական նախաձեռնության զարգացման, սոցիալիստական կոլեկտիվիզմի ձևավորման հզոր միջոց: Այն միշտ ծառայել է որպես արտադրաուժերի վերելքի, արտադրահարաբերությունների կատարելագործման, աշխատավորների դաստիարակության, արտադրության կառավարման մեջ նրանց ներգրավելու արդյունավետ մեթոդ: Սոցիալիստական մրցությունը մեր երկրում իրոք ստացել է համաժողովրդական բնույթ, այն սոցիալիզմի պայմաններում էկոնոմիկայի զարգացման հզոր շարժիչ ուժ է:

Սովետական ժողովուրդն անչափ մեծ փորձ է կուտակել սոցիալիստական մրցության կազմակերպման, լենինյան գաղափարների պրակտիկ կենսագործման ու զարգացման բնագավառում: Մեր երկրի անցած յուրաքանչյուր փուլում՝ սկսած ժողովրդական տնտեսության սոցիալիստական կացութաձևի ստեղծումից մինչև հասուն սոցիալիստական հասարակարգի կառուցումը, մրցությունն ընդունել է տվյալ փուլին համապատասխան կոնկրետ ձևեր:

ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման առթիվ կուսակցության XXIV համագումարի ընդունած բանաձևում ասված է. «Կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների մշտական ուշադրության առարկան պետք է լինի աշխատավորության սոցիալիստական մրցության զարգացումը որպես տնտեսական շինարարության, մարդկանց սոցիալիստական հարաբերությունների ամրապնդման գործուն միջոց: Կատարելագործելով նյութական շահագրգռվածության ձևերը, հարկավոր է ըստ ամենայնի բարձրացնել բարոյական խթանների նշանակությունը, պատվով ու փառքով շրջապատել աշխատանքի առաջավորներին, տարածել նրանց արժեքավոր փորձը» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 271):

Հասուն սոցիալիզմի պայմաններում մրցության վերաբերյալ լենինյան գաղափարները ստեղծագործական զարգացում ստացան «Սոցիալիստական մրցության կազմակերպման հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի 1971 թ. օգոստոսի 31-ի որոշման մեջ, որտեղ ընդհանրացված է մեր երկրում սոցիալիստական մրցության հսկայական փորձը, նշված են նրա կատարելագործման ուղիները: Հետագայում այդ հարցը կոնկրետ կերպով արտացոլվեց ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի հայտնի որոշումներում, որոնք վերաբերում են իններորդ հնգամյակի որոշիչ և եզրափակիչ տարիների առաջադրանքները հաջողությամբ կատարելու համար սոցիալիստական մրցությունը ծավալելու հարցերին:

Մեր հանրապետության բազմաթիվ աշխատանքային կոլեկտիվներ, կիրառելով Մոսկվայի ու Լենինգրադի առաջավոր ձեռնարկությունների փորձը, սոցիալիստական լայն մրցություն ծավալեցին իններորդ հնգամյակի պլանները ժամկետից շուտ կատարելու համար:

Հայտնի է, որ հնգամյա պլանով նախատեսված կարևորագույն խնդիրներից մեկը ժողովրդական սպառման ապրանքների արտադրության շեշտակի ավելացումն է: Ինչպես ամբողջ երկրում, այնպես էլ մեր հանրապետությունում հնգամյակի անցած տարիներին մեծ աշխատանք կատարվեց ժողովրդական սպառման ապրանքներ արտադրող ճյուղերի զարգացման ասպարեզում: Հանրապետությունում կառուցվել ու տեխնիկապես վերազինվել են թեթև արդյունաբերության բազմաթիվ ֆաբրիկաներ ու կոմբինատներ, շարք են մտել սննդարդյունաբերության տասնյակ նոր ձեռնարկություններ:

Հայկական ՍՍՀ արդյունաբերության սիստեմում ժողովրդական սպառման

թողարկումը ավելացնելու, որակը բարձրացնելու, հումքը և նյութերը խնայողաբար ծախսելու, աշխատանքի առաջավոր մեթոդներն արմատավորելու համար:

Կենսագործելով իրենց ստանձնած պարտավորությունները, բազմաթիվ ձեռնարկություններ եզրափակիչ տարվա առաջին կիսամյակում հասել են որոշակի հաջողությունների: Այսպես, այս տարվա հունվար-հունիս ամիսներին ՀՍՍՀ թեթև արդյունաբերության մինիստրության ձեռնարկությունները պլանից ավելի են արտադրել. գործվածք՝ 350 հազար քմ, տրիկոտաժե վերնազգեստ՝ 112 հազար, տրիկոտաժե սպիտակեղեն՝ ավելի քան 800 հազար հատ, 7 մլն ռուբլու կարի արտադրանք: Հանրապետության մսեղենի և կաթնեղենի արդյունաբերության մինիստրության ձեռնարկությունները պլանից ավելի թողարկել են 1.612 տ միս, 5.000 տ կաթ, 33 տ կենդանական յուղ, սննդի արդյունաբերության մինիստրությունը՝ 141 հազար դեկալիտր գինի, 192 տ մակարոն, 71 մլն հատ գլանակ:

Ստանձնած պարտավորությունները գերակատարել է Մայիսյան ապստամբության անվան տեքստիլ կոմբինատի կոլեկտիվը. այս տարվա հունվար-հունիս ամիսներին լրացուցիչ թողարկվել է նախամանվածք՝ 88,5, մանվածք՝ 70 տոննա, որի 96,8 տոկոսը առաջին տեսակի, 741 հազար քմ անմշակ գործվածք, որի 95,7 տոկոսը առաջին տեսակի, 10.747 քմ պատրաստի գործվածք «որականիշով»: Աշխատանքի արտադրողականության բարձրացման առաջադրանքը կատարված է 103,6 տոկոսով, կամ անցյալ տարվա համեմատությամբ աճել է 6,6 տոկոսով: Երիտասարդ բանվորների աշխատանքի արտադրողականությունը միջին հաշվով բարձրացել է 10—15 տոկոսով: Ամրապնդվել է կարգապահությունը, կրճատվել բանվորական օրվա կորուստը:

Ձեռք բերած այս հաջողությունների և երկրորդ եռամսյակում Սովետական Միության տեքստիլագործների մրցությունում հաղթելու համար Լենինականի Մայիսյան ապստամբության անվան տեքստիլ կոմբինատը արժանացել է ՍՍՀՄ թեթև արդյունաբերության մինիստրության և տեքստիլ ու թեթև արդյունաբերության աշխատողների արհեստակցական միության կենտրոնական կոմիտեի մրցանակին: Նրան հանձնված է փոխանցիկ կարմիր դրոշ և դրամական պարգև: ՀԿԿ Կենտկոմի քարտուղար ընկ. Անխիմովը, այդ առթիվ ողջունելով տեքստիլագործներին, դրվատեց նրանց աշխատանքային սխրանքները, վստահություն հայտնեց, որ նրանք պատվով կկատարեն իններորդ հնգամյակի եզրափակիչ տարվա սոցիալիստական պարտավորությունները: Ի դեպ, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության հրամանագրով վերջերս շքանշաններով ու մեդալներով պարգևատրված արտադրության մի խումբ առաջավորների թվում է նաև Լենինականի Մայիսյան ապստամբության անվան տեքստիլ կոմբինատի վարպետ Ա. Ա. Մովսիսյանը:

Մեծ է սոցիալիստական մրցության, մասսաների արտադրական-ստեղծագործական նախաձեռնության ուժը: Սակայն մրցության կազմակերպման գործում դեռևս կան էական թերություններ: Կուսակցության մի շարք քաղաքային ու շրջանային կոմիտեներ, կուսակցական ու արհմիութենական կազմակերպություններ միշտ չէ, որ խորամուխ են լինում մրցության բովանդակության մեջ, մրցող կոլեկտիվների ջանքերը բավարար չափով չեն նպատակամղում կյանքի առաջադրած արմատական հարցերի լուծմանը: Մի շարք կոլեկտիվներում (Երևանի մահուդի կոմբինատ, Լենինականի տրիկոտաժի ֆաբրիկա) մրցության կազմակերպման գործում ցուցաբերվել է ձևամոլություն: Կանոնավոր կերպով չեն ամփոփում մրցության արդյունքները Երևանի գարեջրի և ոչ ալկոհոլային խմիչքների, Սպիտակի շաքարի գործարաններում: Այդ ձեռնարկություններում վատ է կազմակերպված բրիգադային և անհատական մրցությունը, թեև հաշվետվություններում նշվում է, որ բոլոր աշխատավորները մասնակցում են մրցությանը: Դա հենց այն է, ինչ կոչվում է ձևամոլություն և աղավաղում է մրցության բուն գաղափարը: Կան ձեռնարկություններ, որտեղ տնտեսապես բավականաչափ հիմնավորված չեն սոցիալիստական պարտավորությունները: Ձեռնարկությունների, նույնիսկ մինիստրությունների առան-



ձին ղեկավարներ, իրենց տրամադրության տակ ունենալով ռեզերվներ ու հնարավորություններ, դրանք չեն արտացոլում պլաններում և այդ ռեզերվների հաշվին հետագայում ստանձնում են բարձր պարտավորություններ: Իսկ դա բացասաբար է ազդում մարդկանց դաստիարակության:

Մի՞թե սոցիալիստական մրցության նկատմամբ ձևական մոտեցման հետևանք չէ, երբ Երևանի մահուդի կոմբինատում 1974 թ. սարքավորումների պարապուրդները նորմայով նախատեսված 5 տոկոսի փոխարեն եղել են 15,3 տոկոս: Իսկ դրա պատճառով պակաս է արտադրվել 70 տոննա մանվածք, որը հավասար է 400 հազար քմ գործվածքի: Լենինականի տրիկոտաժի ֆաբրիկայում մեքենաների 27 տոկոս պարապուրդ է եղել: Նկատելի են անհարգելի պատճառներով աշխատանքից բացակայելու դեպքեր:

Ետ մնացող ձեռնարկությունների կուսակցական կազմակերպությունները առաջավոր կոլեկտիվների օրինակով պետք է ծավալեն ու գլխավորեն սոցիալիստական մրցությունը հնգամյակի վերջին տարին լավագույն ցուցանիշներով եզրափակելու համար:

Վերջերս հրապարակվեց ՍՄԿԿ Կենտկոմի՝ «ՍՄԿԿ XXV համագումարը արժանավայել դիմավորելու համար ծավալված սոցիալիստական մրցության մասին» որոշումը: Այդ քաղաքական փաստաթուղթը սովետական մարդկանց աշխատանքային նորանոր սխրանքների նպատակամղելու գործում մեծ նշանակություն ունի: Կենտկոմի որոշմանը աշխատավորական կոլեկտիվները պատասխանում են կոնկրետ գործով: Ծավալելով սոցիալիստական մրցությունը, նրանք նոր պարտավորություններ են ստանձնում ՍՄԿԿ XXV համագումարը լավագույն նվաճումներով դիմավորելու համար:

ՍՄԿԿ Կենտկոմը, գոհունակությամբ նշելով աշխատավորների շրջանում առաջացած քաղաքական ակտիվությունը, կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպություններին, տնտեսական մարմիններին հանձնարարեց մասսայական-քաղաքական և կազմակերպական աշխատանքով ամրապնդել ու զարգացնել ամբողջ ժողովրդի աշխատանքային ակտիվության վերելքը, բոլոր ջանքերը նպատակամղել հնգամյակի ավարտական տարվա պլանների կատարմանն ու գերակատարմանը: Հաջողությամբ եզրափակել իններորդ հնգամյակը, այդ նշանակում է հաստատուն քայլերով ոտք դնել առաջիկա հնգամյակի շեմին, հնգամյակ, որի հիմնական խնդիրները կսահմանի ՍՄԿԿ XXV համագումարը:

Նախահամագումարյան մրցության ծավալումը առաջնահերթ քաղաքական և սոցիալական նշանակություն ունեցող գործ է: Կոմունիստները պետք է գլխավորեն սոցիալիստական մրցությունը, մասսաների ստեղծագործական նախաձեռնությունը, լինեն մրցության ոգեշնչողն ու կազմակերպող ուժը: Սոցիալիստական մրցության իմաստը աշխատանքային խիզախումների անվերջությունն է:

# ՀԱՄԱԳՈՒՄԱՐ ԵՆՔ ԳՆՈՒՄ ԼՈՒՐՋ ՆՎԱՃՈՒՄՆԵՐՈՎ

**Զ. Ե. ԶԱՔԱՐՅԱՆ**
Աբովյանի շրջանի Կոտայք գյուղի Կույբիշևի
անվան կոլտնտեսության նախագահ, ՀՍՍՀ
Գերագույն սովետի դեպուտատ

ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՒՐԴԸ, ջերմորեն ընդունելով ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի (1975 թ. ապրիլ) որոշումը ՍՄԿԿ XXV համագումարի հրավիրման մասին, եռանդն ու ջանքերը գործադրում է արտադրական լավագույն ցուցանիշներով, քաղաքական բարձր ակտիվությամբ դիմավորելու կուսակցության հերթական համագումարը:

ՍՄԿԿ XXIV համագումարից հետո անցած ժամանակաշրջանում կուսակցության և սովետական ժողովրդի գործադրած ջանքերը լավագույն արդյունքներ տվեցին կոմունիստական շինարարության մարզում:

Կյանքը համոզիչ կերպով հաստատեց համագումարի վերցրած կուրսի ճշտությունը ինչպես ՍՍՀՄ ներքին, այնպես էլ արտաքին քաղաքականության ասպարեզում: Կուսակցության համագումարից անցել է գրեթե հինգ տարի: Այժմ ամեն մի կոմունիստ, յուրաքանչյուր կոլեկտիվ հաշիվ են տալիս, թե ինչպես են իրագործել այդ համագումարի առաջադրանքները:

ՍՄԿԿ XXIV համագումարը մեր երկրի գյուղատնտեսության զարգացման հիմնական պայմանը համարեց հողագործության ու անասնապահության բիմիացումը, կոմպլեքսային մեքենայացումը և հողերի մելիորացումը: Մեր կոլտնտեսության անդամները, ելնելով համագումարի այդ դրույթից, բոլոր հնարավորությունները գործադրեցին հաջողությամբ լուծելու իրենց առջև դրված խնդիրները:

Յուրաքանչյուր կոլտնտեսության, սովխոզի գլխավոր հարստությունը, գյուղատնտեսության հիմնական արտադրամիջոցը հողն է: Լ. Ի. Բրեժնևի բնորոշմամբ՝ «Հողը մեր ուժի և հարստության աղբյուրն է... Ով ոտնձգություն է կատարում հողի դեմ, անփույթ վերաբերմունք է ցույց տալիս նրան, չի բարձրացնում նրա բերրիությունը, նա խարխլում է ժողովրդի բարեկեցության նյութական նախահիմքը» (Լենինյան կուրսով, հ. 2, էջ 673—674):

Սակավահող է մեր տնտեսությունը, և, բնականաբար, մենք աշխատում ենք հողերի լայն մելիորացմամբ առավել արդյունավետ օգտագործել յուրաքանչյուր քառակուսի մետրը, դրանով իսկ ապահովել տնտեսության պլանային առաջադրանքների կատարումը, մեր ներդրումն ունենալ բնակչությանը մթերքով, արդյունաբերությանը հումքով ապահովելու ընդհանուր գործում:

Ընդամենը 575 հեկտար վարելահող ունի կոլտնտեսությունը: Ոչ վաղ անցյալում մեզ մոտ ամենամեծ հողակտորը 3—4 հեկտար էր: Սկսեցինք հողատարածությունները քարազերծել, վերացնել միջնակները և ստեղծել մեքենահարմար հողային մեծ զանգվածներ: Այժմ յուրաքանչյուր հողակտոր 50—70 հեկտար է:

Մեր գյուղը գտնվում է Աբովյան քաղաքի մոտ, Հատիսի լանջերից սկսվող Քառասունակն աղբյուրներից ոչ հեռու, ծովի մակերևույթից 1440 մետր բարձրության վրա: Կլիման չորային է, շոգ: Ամառները հաճախ անցնում են առանց



անձրևների, որի պատճառով էլ կոլտնտեսության անջրդի հողատարածությունները խիստ տուժում էին:

Այսօր արդեն կոլտնտեսության վարելահողերից 385 հեկտարը ոռոգելի է: 300 հեկտարը ոռոգվում է ինքնահոս, իսկ 85 հեկտարը՝ անձրևացման եղանակով:

Մեր կոլտնտեսության տարածքում ստորերկրյա ջրեր չկան, ուստի մեծ է անձրևացման եղանակով ոռոգման անհրաժեշտությունը. դրա շնորհիվ պահպանվում է հողի կառուցվածքը, մակերեսին կեղև չի առաջանում, ջրի կորուստ համարյա չի լինում: Անձրևացման մեթոդով ոռոգումը օգտակար է և նոր յուրացվող, ջրովի դարձած հողամասերում, հատկապես թեքություն ունեցող ցանքատարածությունների համար (իսկ մեր հողերի զգալի մասը այդպիսին է), մինչդեռ ինքնահոս ջրման ժամանակ հողը ենթարկվում է մասնակի էռոզիայի: Այժմ ջրային պրոբլեմների և հիդրոտեխնիկայի գիտահետազոտական ինստիտուտը մեր կոլտնտեսության դաշտերում փորձական լայն գործունեություն է ծավալել: Կարծում եմ, որ նոր հնգամյակում թեքություն ունեցող մեր դաշտերում լայնորեն կարմատավորենք անձրևացման եղանակով ջրումը:

Ոռոգման մեքենայացումը և ավտոմատացումը, ջրման առաջավոր եղանակներն ու տեխնիկան հնարավորություն կընձեռեն զգալիորեն կրճատելու հողերի ոռոգմամբ զբաղվող աշխատողների թիվը:

Սակավաջուր Հայաստանում ջրի խնայողության խստագույն ռեժիմ սահմանելը հրատապ հարց է: Մենք այսօր էլ խնայողաբար ենք վերաբերվում մեր սքանչելի Սևանի ջրին: Ամենից առաջ առանձին ուշադրություն է հատկացվում գիշերային ոռոգմանը. որպես կանոն, դաշտերը ջրվում են միայն գիշերով: Գիշերային ջրի արդյունավետությունն ապացուցվել է փորձով. ցերեկվա շոգ ժամերին ջրելիս շատ գոլորշիացում է տեղի ունենում, որը բացասաբար է ազդում բույսերի աճին, մինչդեռ գիշերային ջրի ժամանակ՝ գոլորշիացում քիչ է կատարվում:

Ամեն տարի հողերը մաքրվում են քարից, ընդլայնվում են հողակտորները: Խիստ կարևոր է, որ հանքային ու օրգանական պարարտանյութերն օգտագործվում են ըստ հողի կառուցվածքի կազմված քարտեզների: Եթե 1970 թվականին կոլտնտեսությունը օգտագործել է 156 տոննա հանքային և 1.700 տոննա օրգանական պարարտանյութ, ապա 1974-ին համապատասխանաբար՝ 270 և 5.000 տոննա: Պարարտացման և մշակության աշխատանքներն ավելի բարձր հիմքերի վրա դնելու շնորհիվ միավոր հողատարածության բերքատվությունն ավելացել է 45 տոկոսով:

Գյուղատնտեսության համար շատ կարևոր է վնասատուների և հիվանդությունների դեմ պայքարը: Մեր կոլտնտեսությունում այդ պայքարը տարվում է պրոֆիլակտիկ և քիմիական միջոցներով, որոշակի ժամկետներում՝ համաձայն գիտական հիմնարկությունների հաստատած գրաֆիկների: Եվ պատահական չէ, որ 1974 թվականին արտադրված 650 տոննա պտղի (տանձ և խնձոր) 95 տոկոսը ընդունվել է որպես առաջին տեսակի: Կոտայքի կոլտնտեսությունը տարեկան պետությանն է վաճառում 300—400 տոննա բանջարեղեն: Միայն մեկ հեկտար ջերմոցային տնտեսությունից տարեկան ստանում ենք 100 տոննա պոմիդոր և վարունգ: Ջերմոցի մեկ քառակուսի մետրը տալիս է 16 կգ վարունգ:

Ամեն կերպ ջանում ենք իրագործել կուսակցության XXIV համագումարի դիրեկտիվները՝ նվազ բերքատու և սակավարժեք կուլտուրաները փոխարինել բարձր բերքատու և արժեքավոր կուլտուրաներով, անասունների ցեղայնության բարելավման միջոցով ապահովել նրանց մթերատվության բարձրացումը:

Մեր կոլտնտեսականների շրջանում կարողացել ենք արմատավորել խոր հարգանք գիտության նկատմամբ: Հայաստանի գյուղատնտեսության բնագավառի շատ անվանի գիտնականներ, երիտասարդ գիտաշխատողներ դարձել են մեր կոլտնտեսականների խորհրդատուները: Անասնաբուծական-անասնաբուժական գիտահետազոտական ինստիտուտի դիրեկտոր, պրոֆեսոր Վ. Ոսկանյանի անմիջական մասնակցությամբ ու գլխավորությամբ մեզ մոտ լայն

տար տարածության վրա կկատարվեն մակերեսի և արմատական բարելավման աշխատանքներ: Նախատեսված է մինչև 1978 թ. անձրևացման եղանակով ոռոգելի դարձնել թեքության ունեցող դաշտերը: Հնգամյակի ընթացքում ձեռք կբերենք 100.000 ռուբլու արժողությամբ մեքենաներ, գործիքներ, ավտոմատ սարքեր՝ տնտեսության տարբեր ճյուղերում աշխատատար պրոցեսները մեքենայացնելու համար:

Նոր հնգամյակում է՛լ ավելի բարեկեցիկ կդառնա կոլտնտեսականի կյանքը: Կառուցվելու են տիպային մանկապարտեզի շենք, նոր ջրմուղ 7—8 կմ ընդհանուր երկարությամբ: Կընդարձակվեն պտղատու այգիները: Մեր հանրապետությունում, ցավոք, անուշադրության է մատնված մի թանկարժեք կուլտուրայի՝ ընկուզենու մշակությունը: Մենք մտադիր ենք Հադիս լեռան թեք լանջերին ստեղծել դարավանդներ, ուր պետք է տնկվեն պտղատու ծառեր, հատկապես ընկուզենիներ:

Սոցիալիստական տնտեսության պլանային ղեկավարումն ու վարումը հիմնվում է օբյեկտիվ տնտեսական օրենքների վրա: Հետևապես, արտադրության արդյունավետության բարձրացումը կախված է հողի, հիմնական ֆոնդերի, նյութական, աշխատանքային և ֆինանսական միջոցների, կապիտալ ներդրումների օգտագործման, աշխատանքի արտադրողականության տեմպի բարձրացման, մթերքների ինքնարժեքի իջեցման, արտադրության շահութաբերության բարձրացման մակարդակից:

Ինչպես ցույց է տալիս ութերորդ և իններորդ հնգամյակների փորձը, տասներորդ հնգամյա պլանի կատարման և գերակատարման պայքարում Կոտայք գյուղի Կույբիշևի անվան կոլտնտեսության աշխատավորների ստեղծագործական նախաձեռնությունը է՛լ ավելի կծավալվի, նրանք ամեն ինչ կանեն կոմունիստական շինարարության նոր ծրագիրը հաջողությամբ կատարելու համար:

---

# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ՃՅՈՒՂԱՅԻՆ ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ԱՎՏՈՄԱՏԱՑՎԱԾ ՀԱՄԱԿԱՐԳԻ ՍՏԵՂԾՄԱՆ ԱՌԹԻՎ

Հ. Հ. ԵՂԻԱԶԱՐՅԱՆ, ԱԶ. Գ. ԱԴՈՅԱՆ
Տեխնիկական գիտությունների թեկնածուներ

ԸՆԹԱՑԻԿ ՀՆԳԱՄՅԱԿԻ ՏԱՐԻՆԵՐԻՆ ԵՐԿՐՈՒՄ բավականին մեծ փորձ է կուտակվել ձեռնարկությունների, միավորումների և ժողովրդական տնտեսության ճյուղերի կառավարման ավտոմացված համակարգերի ստեղծման ու արդյունավետ շահագործման բնագավառում: Այդ փորձը գիտականորեն ամփոփվում է. լույս են տեսել հիմնարար հետազոտություններ (տե՛ս գրացանկ 1—7-ը):

Մեր հանրապետությունում կառավարման ավտոմատացված համակարգերի ստեղծման աշխատանքները դանդաղ են ծավալվում, քան միութենական մի շարք այլ հանրապետություններում: Պլանավորող օրգաններն այժմ մշակում են ժողովրդական տնտեսության զարգացման հեռանկարային պլաններ: Այս առիթով նպատակահարմար ենք գտնում, հարցադրման կարգով, քննարկման ներկայացնել հանրապետական տնտեսության մի շարք ճյուղերի կառավարման ավտոմատացված համակարգերի (ՃԿԱՀ) ստեղծման մեր ըմբռնումը՝ ելակետ ունենալով տեղական արդյունաբերության արդի վիճակը: Տվյալ պրոբլեմին վերաբերող մեր նկատառումների քննարկումը, հավանաբար, կօգնի գտնելու ավելի արդյունավետ ու նպատակահարմար մեթոդներ և սկզբունքներ, լուծելու մի շարք դժվարին ու վիճելի հարցեր, որոնք առաջադրված են պրակտիկայի կողմից:

Բնորոշում: Ճյուղային կառավարման ավտոմատացված համակարգն իրենից ներկայացնում է վարչատնտեսական ու տնտեսա-մաթեմատիկական մեթոդների, հաշվողական, կազմակերպչական ու կապի տեխնիկական միջոցների մի ամբողջություն: Այն հնարավորություն է ընձեռում ճյուղերը կառավարող օրգաններին (մինիստրություններին, գերատեսչություններին) իրագործելու տնտեսության օպտիմալ կառավարման դժվարագույն պրոցեսները, ապահովելու արդյունաբերության առավել արդյունավետությունը (տե՛ս 6, 7): Պարզ ասած, ՃԿԱՀ-ն «մարդ-մեքենա» համակարգ է, ուր մարդկանց ու էլեկտրոնային տեխնիկայի համագործակցությամբ լուծվում են օպտիմալ կառավարման վերին աստիճանի բարդ տնտեսա-մաթեմատիկական խնդիրները: Այստեղ մարդը տակավին կատարում է ստեղծագործական ու հետաքրքրական աշխատանքներ, որոնք դեռ հնարավոր չէ ավտոմատացնել: Բազմիցս կրկնվող թե պարզունակ և թե բարդ մաթեմատիկական գործողությունները կատարում են

ֆորմացիոն բեռնավորման հաշվարկների հիման վրա լուծվում է այն հարցը, թե արդյոք անհրաժե՞շտ է ՃԿԱՀ-ի ստրուկտուրայում ունենալ ավտոնոմ հաշվողական կենտրոն։

Այսպիսով, ճյուղային կառավարման ավտոմատացված համակարգերի ստեղծումը պահանջում է որոշ կապիտալ ներդրումներ։ Ինչպես տեղական արդյունաբերության մինիստրության, նույնպես և հանրապետական մյուս մինիստրությունների համար այդ ներդրումների չափերը զգալի են։ ՃԿԱՀ-ներ ստեղծելու մասին նախօրոք կազմված ու քննարկված կոնցեպցիաները հնարավորություն կտան կանխելու հնարավոր սխալները և խնայելու էական գումարներ։


ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

1. *ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, Երևան, 1971 թ.։*

2. С. А. Абдурахманов и др., Автоматизированные системы управления в народном хозяйстве СССР. М., 1972.

3. Автоматизированные системы управления. М., 1972.

4. Автоматизированные системы управления. Теория и методология, том 1 и 2. Под редакцией О. В. Козловой. М., 1972.

5. *Ա. Գ. Ադոյան, Կառավարման ավտոմատացված համակարգերը ժողովրդական տնտեսությունում, Երևան, 1974 թ.։*

6. Общеотраслевые руководящие и методические материалы по созданию автоматизированных систем управления предприятиями. М., 1971.

7. Отраслевые автоматизированные системы управления. Под ред. Н. П. Федоренко. М., 1973.

8. А. Егиазарян и С. Карапетян. Отрасль «Тысяча мелочей». Экономическая газета. 1975, № 2.


# ՆՇԱՆԱՎՈՐ ՏԱՐԵԹՎԵՐ

# Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆ ՊԱՅՔԱՐԸ ԸՆԴԴԵՄ ՊԱՏԵՐԱԶՄԻ

(ՑԻՄԵՐՎԱԼԴԻ ԿՈՆՖԵՐԱՆՍԻ 60-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)


**Ջ. Ս. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ**


## I

*Վ*ԱԹՍՈՒՆ ՏԱՐԻ ԱՌԱՋ, 1915 թ. սեպտեմբերին, Շվեյցարիայի Բեռն քաղաքից ոչ հեռու գտնվող Ցիմերվալդ վայրում բացվեց միջազգային առաջին սոցիալիստական կոնֆերանսը։ Հեղափոխականների մի փոքրաթիվ խումբ ուղիներ էր փնտրում, ելք որոնում՝ կանխելու պատերազմական սպանդը։ Աշխատավոր մարդկանց արյունը հորդում էր իմպերիալիստական մագնատների, կապիտալիստների, միլիտարիստական կառավարությունների հանցավոր կամքով։ Աշխարհի վերաբաժանման, ժողովուրդների ստրկացման համար մահու և կենաց գոտեմարտի բռնված տերությունների երկու խմբերը պատերազմի հորձանուտն էին քաշել տասնյակ միլիոնավոր մարդկանց։

Ցիմերվալդի կոնֆերանսի մասնակիցները պրոլետարիատի պայքարն ընդդեմ պատերազմի կազմակերպելու կողմնակիցներն էին։

Կենտրոնում Վլադիմիր Իլյիչ Լենինն էր՝ համաշխարհային պրոլետարիատի ու նրա հեղափոխության հանճարեղ առաջնորդը, որը կոչ էր անում համաշխարհային պատերազմը վերածել քաղաքացիականի, տապալել կապիտալիստների իշխանությունը։ Նա մինչև վերջ հետևողականորեն մերկացրեց II Ինտերնացիոնալի սոցիալ-շովինիստների դավաճանությունը։ «Հայրենիքի պաշտպանության» դիրքերն անցած, բուրժուական կառավարություններում տեղեր ստացած, ռազմական փոխառությունների օգտին քվեարկած II Ինտերնացիոնալի պարագլուխները դավաճանել էին բանվոր դասակարգին, անցել բուրժուազիայի կողմը, տարվել նացիոնալիստական շմոլքով, քայքայել պրոլետարիատի համերաշխության և միասնության ճակատը, դարձել բանվոր դասակարգի թշնամիներ։

Անա այս պայմաններում բոլշևիկները, Վ. Ի. Լենինի գլխավորությամբ, հանդիսացան, ըստ էության, միակ կուսակցությունը, միակ կազմակերպությունը, որը մինչև վերջ, ամենայն հետևողականությամբ պայքարում էր հանուն պրոլետարական-ինտերնացիոնալիզմի, ընդդեմ պատերազմի, հանուն ժողովուրդների խաղաղության։

Թեև միջազգային սոցիալիստական կոնգրեսները (Շտուտգարտ— 1907 թ.,

կոպենհագեն— 1910 թ., Բազել— 1912 թ.) հակամիլիտարիստական, հակաիմպերիալիստական բանաձևեր էին ընդունել, բայց պատերազմը սկսվելուց հետո դրանք մոռացության էին մատնվել սոցիալ-դավաճանների կողմից: 1912 թ. Բազելում հանդիսավոր կերպով հայտարարվել էր, որ եվրոպական առաջիկա պատերազմը սոցիալիստները համարելու են «բոլոր կառավարությունների «հանցավոր» գործ»:

Պատերազմի սկզբին թեև միջազգային սոցիալիստական բյուրոն արտահայտվեց ընդդեմ պատերազմի, կոչ արեց ցույցեր կազմակերպել դրա դեմ, բայց II Ինտերնացիոնալն ընդհանուր առմամբ մխրճվեց սոցիալ-պատրիոտիզմի դավաճանական ճահիճը: Ֆրանսիական կառավարության կազմի մեջ առաջինը տեղ գրավեց Միլյերանը, այնուհետև «միլյերանիզմը» դարձավ համընդհանուր երևույթ: Միլիտարիզմի դեմ մղվող պայքարի անզիջում մարտիկ Ժան Ժորեսն սպանվեց: Ֆրանսիայի պառլամենտի սոցիալիստական ֆրակցիան քվեարկեց ռազմական փոխառությունների օգտին: Ռուս սոցիալ-շովինիստները միավորվեցին ամենահետադիմական շրջանների հետ: Դումայի ամբիոնից Պուրիշկևիչը, ուրախությունից շնչահեղձ, դրվատում էր Պլեխանովի օպորտունիստական գրքույկը:

Նույն պրոցեսը տեղի էր ունենում Գերմանիայում, Անգլիայում և այլուր: Բուրժուական նացիոնալիզմը հաղթանակել էր II Ինտերնացիոնալի կուսակցություններում: Առավել անհաշտ, հետևողական տարրերը ծառս եղան սոցիալ-հայրենասիրության, սոցիալիստական իդեալները ոտնահարողների դեմ: Կազմավորվեց երկու ուղղություն, երկու հոսանք՝ մեծաթիվ, հսկայական ռեֆորմիստական, համաձայնողական մեծամասնությունը, որն ընդառաջում էր բուրժուազիային, և փոքրաթիվ՝ անհաշտ, զուտ դասակարգային, պրոլետարական չափանիշներով ղեկավարվող փոքրամասնությունը: Սկսվել էր պառակտման շրջանը: Դրությունը շտկելու գործն իրենց ձեռքը վերցրին ձախ ուժերը, այսպես կոչված՝ «ցիմմերվալդականները», որոնք հավատարիմ էին մնում սոցիալիզմի և պրոլետարիատի շահերին:

Այդ պատմական պահը Վ. Ի. Լենինի կուսակցության առջև դրեց չափից ավելի դժվարին և պատասխանատու խնդիր՝ միջազգային պրոլետարական շարժումը դուրս բերել փակուղուց: Արդեն պատերազմի սկզբին Վ. Ի. Լենինի թեզիսների հիման վրա կազմվեց ՌՍԴԲԿ Կենտկոմի Մանիֆեստը, որը ոչ միայն հրապարակվեց ռուսերեն, այլև թարգմանվեց և տարածվեց եվրոպական լեզուներով: Մանիֆեստը կոչ էր անում ստեղծել նոր, օպորտունիզմից զերծ Ինտերնացիոնալ: Կուսակցության Կենտկոմը և բոլշևիկների արտասահմանյան սեկցիաները եռանդուն գործունեություն ծավալեցին սոցիալիստ-ինտերնացիոնալիստների ուժերը միավորելու համար:

Վ. Ի. Լենինն ապացուցում էր, որ պատերազմը իմպերիալիզմի ծնունդն էր, որ պատերազմը ստրկատերերի պատերազմ էր ստրկության պահպանման ու ամրապնդման, գաղութների վերաբաժանման համար, օտար ազգերին կեղեքելու «իրավունքի», մեծապետական կապիտալի արտոնությունների ու մոնոպոլիաների համար: Այդ պատճառով էլ պատերազմող երկու խմբի կողմից «հայրենիքի պաշտպանության» մասին ճառերը խաբեություն էին բուրժուազիայի կողմից: Հեղափոխության առաջնորդը հանդես էր գալիս խաղաղության վերացական քարոզի դեմ, պացիֆիզմը համարում էր բանվոր դասակարգին մոլորեցնելու ձևերից մեկը: Միակ ելքը իմպերիալիստական պատերազմից հեղափոխական պայքարն էր կապիտալիզմի տապալման համար, հանուն սոցիալիզմի:

Հիրավի, տիտանական էր Լենինի ծավալած գործունեությունը Շվեյցարիայում: Նա հետևում էր եվրոպական սոցիալ-դեմոկրատիայի գործողություններին, կապեր հաստատում հակապատերազմական դիրքորոշում ունեցող ձախ ուժերի հետ, նամակագրությամբ և կենդանի կապերով ձգտում ամրապնդել ճակատն ընդդեմ շովինիզմի, ընդդեմ բանվոր դասակարգի գործի դավաճանների: Բոլշևիկների, ձախերի ջանքերով էր, որ Ցիմերվալդին նախորդեցին կանանց և երիտասարդական միջազգային կոնֆերանսները: Այս ֆո-



րումներում արդեն դրսևորվեցին երկու աշխարհայեցողություն, պատերազմի և Ինտերնացիոնալի խնդիրների երկու գնահատական, պրոլետարական կուսակցությունների երկու տակտիկա:

Սոցիալիստական կուսակցություններում սահմանազատման պրոցեսը հեղափոխական և օպորտունիստական թևերի միջև արհեստականորեն արգելակում էին ցենտրիստները: Նրանց գործունեության նշանաբանը դարձավ խաղաղության մասին պացիֆիստական լոզունգը: Խաղաղության լոզունգը կաուցկիականները փորձում էին իրականացնել ոչ թե հեղափոխական մեթոդներով, այլ իմպերիալիստական կառավարություններին ներկայացվող խնդրագրերով, դիմումներով: Կառավարող շրջանները բոլորովին չէին քաշվում այդ կարգի «խաղաղության պրոպագանդայից», որը չէր խանգարում շարունակելու պատերազմը «մինչև հաղթական ավարտ»:

Բոլշևիկները ձախ սոցիալիստներին համախմբում էին պրոլետարական ինտերնացիոնալիզմի և հեղափոխական պայքարի դրոշի ներքո: Մեծ էր այդ գործում լենինյան «Սոցիալ-դեմոկրատ» թերթի դերը: Հետևողականորեն միասնության ձգտելով ձախ ինտերնացիոնալիստների հետ՝ Վ. Ի. Լենինը միաժամանակ թույլ չէր տալիս թեկուզ փոքր չափով նահանջել հեղափոխական մարքսիզմից: Կոնֆերանսի նախօրյակին նա թե՛ կազմակերպական, թե՛ տեսական-քաղաքական հսկայական աշխատանք ծավալեց: Առաջնորդի ջանքերով 1915 թ. օգոստոսին լույս տեսավ «Կոմունիստ» ամսագրի առաջին համարը, որին մասնակցում էին տարբեր երկրների ձախ սոցիալիստ հեղինակներ: Ամսագրում լույս տեսան Լենինի երեք հոդվածներ, այդ թվում «II Ինտերնացիոնալի կրախը»: 1915 թ. հունիսի կեսերին գրված այս կարևոր հոդվածում ընդգծվում էր, որ II Ինտերնացիոնալի կրախի տակ պետք է հասկանալ ոչ թե գործի ձևական կողմը, այսինքն՝ ոչ թե կռվող երկրների սոցիալիստական կուսակցությունների միջև կապերի ժամանակավոր ընդհատում: Այսպիսի բացատրությունը ձեռնտու էր օպորտունիստներին: Ինտերնացիոնալի կրախն իրականում նշանակում էր սոցիալ-դեմոկրատական կուսակցությունների մեծամասնության նենգ դավաճանությունն իրենց իսկ հանդիսավոր հայտարարություններին, որոնք նրանք արել էին մինչպատերազմյան կոնգրեսներում:

1915 թ. հուլիս-օգոստոսին Լենինը գրեց իր Սոցիալիզմն ու պատերազմը բրոշյուրը, որը հրատարակվեց «Սոցիալ-դեմոկրատի» խմբագրության կողմից: Այս աշխատանքի գլխավոր նպատակն էր ձախ սոցիալիստներին ծանոթացնել պատերազմի հարցում բոլշևիկյան կուսակցության դիրքորոշմանը: Բրոշյուրը լույս տեսավ 1915 թ. սեպտեմբերին՝ գերմաներեն, և բաժանվեց սոցիալիստների Ցիմերվալդի կոնֆերանսի պատվիրակներին:

Այն հարցին, թե «ի՞նչ է սոցիալ-շովինիզմը», Վ. Ի. Լենինը պատասխանել է. «Սոցիալ-շովինիզմը տվյալ պատերազմում «հայրենիքի պաշտպանության» գաղափարի պաշտպանությունն է: Այս գաղափարից այնուհետև բխում է պատերազմի ժամանակ հրաժարումը դասակարգային պայքարից, հօգուտ ռազմական վարկերի քվեարկումը և այլն: Իրականում սոցիալ-շովինիստները վարում են հակապրոլետարական, բուրժուական քաղաքականություն, որովհետև իրոք նրանք պաշտպանում են ոչ թե «հայրենիքի պաշտպանությունը» օտարազգի ճնշման դեմ պայքարելու իմաստով, այլ այս կամ այն «մեծ» տերությունների «իրավունքը»՝ թալանելու գաղութները և ճնշելու օտար ժողովուրդները» (Երկեր, հ. 21, էջ 388—389):

Վ. Ի. Լենինը բացահայտում էր սոցիալ-շովինիստների խաբեությունն այն մասին, թե իբր պատերազմը մղվում է փոքր ազգերի ազատության ու գոյության պաշտպանության համար, ցույց էր տալիս, որ դա լիակատար դավաճանություն է սոցիալիստական համոզմունքներին և 1912 թվականին պատերազմի մասին Բազելի միջազգային սոցիալիստական կոնֆերանսում միաձայն ընդունված Մանիֆեստին:

Դեռևս 1914 թ. Լուգանոյում իտալական և շվեյցարական սոցիալիստների հրավիրած կոնֆերանսում հակապատերազմական միավորման փորձ արվեց: Սակայն միայն 1915 թ. կեսերին, երբ Եվրոպայի պատերազմող երկրներում

քաղաքական խնդիրների լուրջ բարդացման հետևանքով ստեղծվեց հեղափոխական իրադրություն, հաջողվեց ստեղծել այդպիսի միավորում՝ «Ցիմերվալդյան ձախը»:

## II

ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԿՈՆՖԵՐԱՆՍԸ Ցիմերվալդում (Շվեյցարիա) կայացավ 1915 թվականի սեպտեմբերի 5—8-ը: Դա պատերազմի ժամանակ ինտերնացիոնալիստների առաջին կոնֆերանսն էր: Նրան մասնակցում էր 38 պատվիրակ 11 երկրներից (Ռուսաստան, Լեհաստան, Իտալիա, Բուլղարիա, Ռումինիա, Գերմանիա, Ֆրանսիա, Շվեյցարիա, Հոլանդիա, Շվեդիա, Նորվեգիա): Կոնֆերանսում պայքար ծավալվեց հեղափոխական ինտերնացիոնալիստների և ցենտրիստական ու կիսացենտրիստական մեծամասնության միջև:

Կոնֆերանսում հստակորեն դրսևորվեց երկու ուղղություն: Առաջինը՝ կիսակաուցկիական աջ թևը, կազմված գերմանական պատվիրակության մեծամասնությունից, իտալականի մի մասից, շվեյցարական, լեհական և ռուսական (էսեռներ, մենշևիկներ, բունդական) պատվիրակություններից: Այսպես կոչված ցիմերվալդյան կենտրոնը (5—6 պատվիրակ՝ Գրիմի և Տրոցկու գլխավորությամբ), խուսելով որոշ զիջումներ անելով ձախերին, մեծամասնությամբ պաշտպանում էր աջ թևին:

Ցիմերվալդի մեծամասնության ցենտրիստական և կիսացենտրիստական պատվիրակներին դեմհանդիման կանգնած էր ինտերնացիոնալիստների, հեղափոխական մարքսիստների խումբը. ՌՍԴԲԿ Կենտկոմի ներկայացուցիչ՝ Լենինը, լատիշական սոցիալ-դեմոկրատների կողմից Բերզինը, լեհ պատվիրակ Ռադեկը, գերմանացի՝ Բորխարդտը, շվեյցարացի՝ Պլատտենը, շվեդացի՝ Խեգլունդը և նորվեգացի՝ Ներմանը:

Հիմնական գաղափարական պայքարը կոնֆերանսում ծավալվեց հեղափոխական ձախ թևի և տատանվող, համարյա կաուցկիական աջ թևի միջև:

Կոնֆերանսը բացեց շվեյցարացի Գրիմը, հիշատակելով, որ նրա նպատակը նոր Ինտերնացիոնալի ստեղծումը չէ: Նրա կարծիքով, կոնֆերանսի գլխավոր խնդիրն էր՝ կոչեր հրապարակել հանուն խաղաղության և այդ նպատակով ստեղծել գործողությունների կենտրոն:

Հաստատված օրակարգի հարցերից կարևորագույններն էին՝ հաղորդումներ առանձին երկրների դրության մասին, պրոլետարիատի պայքարը խաղաղության համար, կենտրոնի ստեղծումը, այսինքն՝ ինտերնացիոնալ սոցիալիստական հանձնաժողովի ընտրությունը:

Այնուհետև ընթերցվեց Կարլ Լիբկնեխտի նամակը (գրված սեպտեմբերի 3-ին) կոնֆերանսի պատվիրակներին: Այդ նամակում նա հռչակում էր. «Քաղաքացիական պատերազմ, այլ ոչ թե քաղաքացիական խաղաղություն»: Լիբկնեխտը կոչ էր անում բարձր պահել պրոլետարիատի միջազգային համերաշխության դրոշը: «Նոր ինտերնացիոնալը կվերածնվի,— գրում էր նա,— այն կարող է վերածնվել հնի փլատակների վրա, նոր, առավել ամուր հիմքի վրա»: Լիբկնեխտի նամակին տալով բարձր գնահատական, Լենինը բացականչեց. «Քաղաքացիական պատերա՜զմ— դա հոյակա՜պ է» («Пролет. революция», 1929, № 7 (90), стр. 142):

Պատվիրակները լսեցին Շվեդիայի և Նորվեգիայի սոցիալ-դեմոկրատական երիտասարդական միության դեկլարացիան, որտեղ ասված էր, որ «խաղաղության կարելի է հասնել միայն... քաղաքացիական խաղաղությունը քաղաքացիական պատերազմով փոխարինելով»:

Աքսելրոդը, հանդես գալով մենշևիկների անունից, հայտարարում էր, որ Անտանտի ռազմական հաղթանակը բարիք կլիներ ամբողջ մարդկության համար:

Հիմնական խնդիրը պրոլետարիատի կողմից հանուն խաղաղության մղվող պայքարի հարցն էր: Քննարկման ընթացքում ձախերը մտցրին բանաձևի և



Մանիֆեստի իրենց նախագծերը, որոնք բացահայտում էին համաշխարհային պատերազմի իմպերիալիստական բնույթը, վճռականորեն դատապարտում սոցիալ-շովինիզմը և բանվորներին կոչ էին անում քաղաքացիական պատերազմի միջոցով նվաճել քաղաքական իշխանությունը: Աջ մեծամասնությունը մերժեց երկու փաստաթուղթն էլ և առաջարկեց սահմանափակվել դատարկահնչյուն պացիֆիստական հայտարարությամբ: Հանդես գալով ձախերի բանաձևի և Մանիֆեստի դեմ՝ Լեդեբուրը հայտարարում էր. «Մենք հավաքվել ենք այստեղ... ոչ այն բանի համար, որպեսզի ստեղծենք III Ինտերնացիոնալ... Լենինի բանաձևը անընդունելի է»:

Վ. Ի. Լենինը ձախերի անունից պահանջում էր կոնկրետացնել քաղաքական լոզունգները, ցույց տալիս, որ պատերազմի սարսափներից փրկվելու միակ ուղին սոցիալիզմի համար մղվող հեղափոխական պայքարի ուղին է: Ձախերի Մանիֆեստի նախագծում հետևողականորեն անցկացվում էր հեղափոխական տեսակետ իմպերիալիստական պատերազմի պայմաններում: Այնտեղ գլխավոր պայման էր հռչակվում հեղափոխական միջոցներով կապիտալիստական կառավարությունների տապալումը, որը հնարավորություն կտար վերջակետ դնելու պատերազմներին, մեկ ժողովրդի շահագործմանը մյուսի կողմից և այլն:

Նախագիծը նշում էր, որ այս նպատակին հասնելու առաջին միջոցը ռազմական փոխառությունների օգտին քվեարկելուց հրաժարվելն է, մինիստրություններից սոցիալիստների դուրս գալը: Հանձնաժողովում բուռն վեճեր եղան: Լենինը ձախերի միակ ներկայացուցիչն էր հանձնաժողովում և ցուցաբերում էր ճկուն մոտեցում՝ ընդունվող փաստաթուղթը հեղափոխական ոգով բարելավելու համար: Նա պահանջում էր հատուկ կետ մտցնել ռազմական փոխառությունների դեմ քվեարկելու մասին: Սակայն դրան ուլտիմատիվ կերպով դիմադրեց Լեդեբուրը: Ձախերի համառ պնդմամբ կոնֆերանսն արձանագրեց, որ պրոլետարիատի ելույթը խաղաղության օգտին չի սպառվում նրանով, որ նրա ներկայացուցիչները հանդես են գալիս հակապատերազմական կոչերով: Միայն պրոլետարական ուժերի համատեղ գործողություններով է հնարավոր նվաճել այն ազդեցությունը, որը կստիպի տիրապետող դասակարգերին դադարեցնել ժողովուրդների հրեշավոր սպանդը:

Հանձնաժողովի աշխատանքի ավարտից հետո, սեպտեմբերի 8-ին պատվիրակները նորից հավաքվեցին պլենար նիստի: Գրիմն ընթերցեց Մանիֆեստի գերմաներեն տեքստը: Լենինն անհրաժեշտ համարեց հայտարարել, որ Մանիֆեստը չի բավարարում հեղափոխական մարքսիզմի սկզբունքներին: Այս նպատակով Լենինի և ընկերների անունից հրապարակվեց ցիմերվալդյան ձախի հայտարարությունը: Այնտեղ ասված էր, որ Մանիֆեստը լիովին չի բավարարում իրենց, քանի որ չի պարունակում պատերազմի դեմ պայքարի միջոցների հստակ բնորոշում, այնտեղ չի բնորոշվում ու դատապարտվում օպորտունիզմը: Լենինն ասում էր, որ քվերակում են Մանիֆեստի օգտին, որովհետև նրա վրա նայում են որպես պայքարի կոչի և այդ պայքարում ուզում են ձեռք-ձեռքի ընթանալ Ինտերնացիոնալի մնացած մասերի հետ:

Ցիմերվալդի կոնֆերանսը, բնականաբար, չլուծեց շատ հարցեր, և սոցիալիստ-ինտերնացիոնալիստների միավորումը հեղափոխական մարքսիզմի պլատֆորմի վրա ավարտուն լինելուց շատ հեռու էր: Հեղափոխական ինտերնացիոնալիստների բլոկը ցենտրիստական մեծամասնության հետ Ցիմերվալդում կազմավորվեց որպես երկու սկզբունքային տարբեր ուղղությունների ժամանակավոր միավորում, որոնք չդադարեցրին պայքարը միմյանց դեմ:

Կոնֆերանսն ընդունեց կոմպրոմիսային Մանիֆեստ (տե՛ս Первая циммервальдская конференция. Официальные документы. Петроград, стр. 18—23), որը թեև շատ բանով չէր բավարարում ցիմերվալդյան ձախի գաղափարական պլատֆորմին, ընդհանուր առմամբ պատասխանում էր միջազգային պրոլետարիատին իմպերիալիզմի և պատերազմի դեմ պայքարի հանելու խնդրին, քանի որ ընդունում էր պատերազմի իմպերիալիստական բնույթը և ցույց էր տալիս (ճիշտ է՝ ոչ հստակ արտահայտություններով) հայրենի-

քի պաշտպանության լոզունգի ստահոդությունը և II Ինտերնացիոնալի պարագլուխների դավաճանությունը: Ձախերը քվեարկեցին Մանիֆեստի օգտին, քանի որ այն մի քայլ առաջ էր օպորտունիզմի դեմ պայքարելու, նրանից կապերը խզելու ու պառակտվելու իմաստով, միաժամանակ շեշտելով, որ այնտեղ կոչ չի արվում կապիտալիզմը խորտակելու մասին: Կոնֆերանսի արդյունքներից ամենակարևորը Լենինը համարեց ձախ ուժերի համախմբման փաստը:

Հիրավի, Վ. Ի. Լենինին հաջողվեց իր շուրջը համախմբել միջազգային սոցիալիստական շարժման ձախ ուժերին, հանդես գալ սեփական տակտիկայով, գլխավոր Մանիֆեստում անցկացնել մի շարք հիմնական գաղափարներ, մասնակցել ինտերնացիոնալ սոցիալիստական հանձնաժողովին, այսինքն՝ փաստորեն նոր միջազգային սոցիալիստական բյուրոյի ստեղծմանը, այն Մանիֆեստի հիման վրա, որն ուղղակիորեն դատապարտում էր հնի տակտիկան: «Հարկ կա՞ր արդյոք, որ մեր Կենտրոնական կոմիտեն ստորագրեր անհետևողականությամբ և երկչոտությամբ տառապող այդ Մանիֆեստը: Մենք կարծում ենք՝ այո»,— գրում էր Վ. Ի. Լենինը: Եվ այնուհետև. «Փաստ է, որ այդ Մանիֆեստը մի քայլ առաջ է անում դեպի իսկական պայքարը օպորտունիզմի դեմ, դեպի կապերի խզումն ու պառակտումը նրա հետ: Աղանդավորություն կլիներ հրաժարվել գերմանացիների, ֆրանսիացիների, շվեդների, նորվեգացիների, շվեյցարացիների փոքրամասնության հետ միասին այդ մի քայլ առաջ անելուց, երբ մենք պահպանում ենք լիակատար ազատություն և լիակատար հնարավորություն քննադատելու անհետևողականությունը և ավելի շատ բանի հասնելու» (տե՛ս Երկեր, հ. 21, էջ 491—492):

Կոնֆերանսի խաղացած դերի ու նշանակության գնահատականը Վ. Ի. Լենինը տվել է «Ցիմմերվալդյան ձախի բանաձևի նախագիծը», «Առաջին քայլը», «Հեղափոխական մարքսիստները միջազգային սոցիալիստական կոնֆերանսում 5—8 սեպտեմբերի 1915 թ.» հոդվածներում: Վ. Ի. Լենինը ցույց է տալիս, որ բոլշևիկները, հաշվի առնելով Արևմուտքում ձախերի գաղափարական և կազմակերպչական թուլությունը, հանուն այն բանի, որպեսզի միջազգային պրոլետարիատի մոտ արթնացնեին հեղափոխական ոգին, մտան այդ ժամանակավոր բլոկի մեջ, որն իր սուր ծայրով ուղղված է սոցիալ-շովինիզմի դեմ: Հենց այն փաստը, որ Ցիմմերվալդի կոնֆերանսը հրավիրվեց Միջազգային սոցիալիստական բյուրոյի և կառուցկիական կենտրոնի կամքին և ցանկությանը հակառակ, ըստ էության, նշանակում էր պատերազմի հայտարարում II Ինտերնացիոնալին:

Ցիմմերվալդի ձախը, ըստ էության, հանդիսացավ ապագա III կոմունիստական Ինտերնացիոնալի նախապատրաստման առաջին քայլը: Ցիմմերվալդից հետո նոր փուլ սկսվեց Լենինի գլխավորությամբ միջազգային պրոլետարիատի հեղափոխական ուժերը միավորելու համար՝ ընդդեմ իմպերիալիստական պատերազմի:

Վ. Ի. Լենինի միջազգային հեղինակությունը մեծ չափով աճեց Ցիմմերվալդի կոնֆերանսից հետո: Նրա ազդեցությունը Ցիմմերվալդում այնքան մեծ էր, հիշում էր Ֆ. Պլատտենը, որ, չնայած ձախերի խմբի փոքրաթիվ լինելուն, նա, «անտարակույս իշխող ազդեցություն թողեց կոնֆերանսի որոշումների վրա» (տե՛ս Я. Г. Темкин, Ленин и международная социал-демократия, 1914—1917. М., 1968, стр. 245):

III

ԿՈՆՖԵՐԱՆՍԻ ՓԱՍՏԱԹՂԹԵՐՈՒՄ ՀԻՇԱՏԱԿՎԵՑ ՀԱՅԱՍՏԱՆԻ, հայ ժողովրդի ծանր վիճակի մասին: Այն պահից սկսած, երբ հայկական հարցը դարձավ միջազգային դիվանագիտության «հոգացողության առարկա», երբ այդ առթիվ ճառեր էին ասվում ամենուրեք, ամենից հետևողականը բոլշևիկներն էին հանդես գալիս հայ աշխատավոր ժողովրդի շահերի իրական պաշտպանությամբ, մերկացնում եվրոպական դիվանագիտության և ցարիզմի ծրագրերը Հայաստանի նկատմամբ: «Երկրորդ Ինտերնացիոնալի կրախը» հոդվածում, որ



գրվել է 1915 թ. մայիս-հունիսին, Վ. Ի. Լենինը, քննադատելով սոցիալ-շովինիզմի գլխավոր տեսաբաններից մեկին՝ Պլեխանովին, ցույց էր տալիս, որ պատերազմին նախորդած տնտեսական և դիվանագիտական պատմության երեսուն տարիները գաղութների հափշտակման, օտար երկրների կողոպուտի, մրցակցին դուրս մղելու համար պատերազմող տերությունների երկու խմբերի քաղաքականության գլխավոր առանցքն էին:

Վ. Ի. Լենինն ընդգծում էր, որ Պլեխանովը լռության է մատնում ռուս սոցիալիստների կողմից իմպերիալիստական ծրագրերի (այդ թվում նաև Հայաստանի նկատմամբ) մերկացումն ու քննադատությունը (Երկեր, հ. 21, էջ 268):

«Հեղափոխական պրոլետարիատը և ազգերի ինքնորոշման իրավունքը» հոդվածում, 1915 թ. հոկտեմբերին Վ. Ի. Լենինը ամենախիստ քննադատության էր ենթարկում Պարաբելլումի՝ Կարլ Ռադեկի սխալ դիրքորոշումը ազգերի ինքնորոշման իրավունքի հարցում: Ըստ Ռադեկի, գրում էր Լենինը, «այժմ բոլոր ազգային հարցերը՝ էլզաս-լոթարինգիականը, հայկականը և այլն՝ իմպերիալիզմի հարցեր են,— որ կապիտալը գերաճել է ազգային պետությունների շրջանակներից,— որ չի կարելի «պատմության անիվը ետ դարձնել» դեպի ազգային պետությունների իր դարն ապրած իդեալը և այլն:

Տեսնենք, ճի՞շտ են արդյոք Պարաբելլումի դատողությունները» (Երկեր, հ. 21, էջ 516): Վ. Ի. Լենինն ապացուցում է, որ «Մենք պետք է սոցիալիզմի համար մղվող հեղափոխական պայքարը կապակցենք հեղափոխական ծրագրի հետ՝ ազգային հարցում» (նույն տեղը, էջ 517), ցույց տալիս Կ. Ռադեկի տեսակետի սխալականությունը:

Վ. Ի. Լենինը գտնում էր, որ չպետք է զարգացած Անգլիան, Ֆրանսիան, Գերմանիան շփոթել Արևելքի, Ասիայի ազատագրության համար պայքարող երկրների ու ժողովուրդների հետ: Նա խնդիր էր դնում «պայքարել մեծապետական ազգերի սոցիալ-շովինիզմի դեմ, որոնք այժմ իմպերիալիստական պատերազմ են մղում ազգերի կեղեքումն ամրապնդելու համար և որոնք կեղեքում են աշխարհի ազգերի մեծամասնությանն ու երկրագնդի բնակչության մեծամասնությանը,— հենց այդ տեսակետը պետք է վճռական, գլխավոր, հիմնական լինի սոցիալ-դեմոկրատների ազգային ծրագրում» (նույն տեղը, էջ 521):

Պատերազմն իմպերիալիստական էր: Բայց Վ. Ի. Լենինը չէր ժխտում պատերազմի որոշ մասնակիցների կամ նրանով շահագրգռված որոշ երկրների, ժողովուրդների համար բուրժուա-առաջադիմական, ազգային-ազատագրական նկրտումների առկայությունը: Նա գտնում էր, որ «այժմյան պատերազմի մասնակիցների ինչ-որ հարյուրերորդականի համար պատերազմը բուրժուական ազատագրական շարժման «քաղաքականության շարունակությունն է» (նույն տեղը, էջ 292): Վ. Ի. Լենինը ազատագրական պատերազմը տաճկական (թուրքական) բարբարոսական բռնակալության դեմ համարում էր առաջադիմական, օգտակար մարդկության զարգացման շահերի տեսակետից (տե՛ս նույն տեղը, էջ 379):

«Ցիմմերվալդյան ձախի բանաձևի նախագիծը» հոդվածում Վ. Ի. Լենինը նշում էր. «Եվ ներկայումս, եթե Եվրոպայի արևելքում կամ գաղութներում ծագեր ճնշված ազգերի պատերազմ իրենց կեղեքողների, մեծ տերությունների դեմ, սոցիալիստների համակրանքն ամբողջությամբ կլիներ կեղեքվածների կողմը» (նույն տեղը, էջ 438—439): Իսկ հայ ժողովուրդը կեղեքված էր թուրքական մեծապետական նացիոնալիզմի կողմից: Նա պայքարում էր իր գոյության, ազգային համախմբման և հայրենիք ունենալու համար: Ահա թե ինչու նրա արդարացի մաքառումներն արժանանում էին բոլշևիկների՝ հայ ժողովրդի ամենահետևողական բարեկամների, նրա դատի նվիրված պաշտպանների համակրանքին ու պաշտպանությանը:

Ցիմմերվալդի կոնֆերանսում ընդունված երկու փաստաթղթերում, որ ստորագրել էր Վ. Ի. Լենինը, սոցիալիստներն իրենց համակրանքն էին արտահայտում հայ ժողովրդի նկատմամբ, որի վիճակը կրիտիկական դարձավ հենց իմպերիալիստական պատերազմի հետևանքով:

հետևողականորեն և սկզբունքայնորեն իրականացնեին խաղաղության պաշտպանության, ժողովուրդների ազատության և անվտանգության, նրանց ազգային անկախության և սոցիալական առաջադիմության արտաքին քաղաքական կուրս։ Հիրավի, սովետական մարդիկ հպարտ են, որ այսօր լենինյան կուսակցությունն է հանդես գալիս խաղաղության գործի պաշտպանության ջահակրի դերում, որ ՍՄԿԿ XXIV համագումարի հռչակած խաղաղության ծրագիրն արդեն տվել է իր պտուղները։

Վերջին ժամանակներն առանձնապես խոստումնալից և արգասավոր էին Եվրոպայում, ինչպես և ամբողջ աշխարհում խաղաղության գործի պաշտպանության, ժողովուրդների անվտանգությունն ապահովելու համար։ «Սոյուզ—Ապոլոն» տիեզերական աննախընթաց ծրագրի հաջող իրականացումը ոչ միայն ուրախալի և աչքի ընկնող հաջողություն է տիեզերքի գիտական ուսումնասիրության ասպարեզում։ Այս ակտը խորհրդանշում է խաղաղ գոյակցության հնարավորությունը, խորհրդանշում է համագործակցության անհրաժեշտությունը ի բարօրություն մարդկության։

Հելսինկիի ավարտական ակտը, Եվրոպայում անվտանգության և համագործակցության ապահովման նպատակով ամիսների ու տարիների բանակցությունների հաջող ամփոփումը, որը նշանավորում է էական քայլ եվրոպական մայրցամաքը կայուն խաղաղության և փոխշահավետ, զարգացող կապերի գոտի վերածելու ճանապարհին, նշանակում է, որ խաղաղության, ժողովուրդների համագործակցության, քաղաքական տարբեր սիստեմների խաղաղ գոյակցության քաղաքականությունը, հիրավի, տալիս է իր օգտակար արդյունքները։

Եվ սա այն Եվրոպան է, որը դարերի ընթացքում եղել է ռազմական բախումների, երկու համաշխարհային պատերազմների աղբյուրը։ Այս Եվրոպան մեր աչքերի առջև վերածվում է խաղաղության, անվտանգության և համագործակցության ռեգիոնի։ Հելսինկիում բարձր մակարդակի հանդիպումը ապոթեոզն է այն պայքարի, որ սառը պատերազմի դեմ, հանուն համագործակցության և խաղաղ մրցության մղում էին Եվրոպայի կոմունիստները, առաջադեմ բոլոր ուժերը, ձգտելով կանխել համաշխարհային աղետը։

Դա հենց ՍՄԿԿ Կենտկոմի լենինյան քաղաքականության հաղթանակն է, բոլշևիկյան կուսակցության գործունեության տասնյակ տարիների կուտակած բազմահարուստ փորձի, հետևողականության, սկզբունքայնության, ժողովուրդների գործին անսահման նվիրվածության հաղթանակը։ Ոչ մի կուսակցություն այդպիսի հետևողականությամբ չի պայքարել ժողովուրդների իրական երջանկության և խաղաղության համար, ինչպես Լենինի կուսակցությունը՝ սկսած իր հիմնադրումից մինչև մեր օրերը։ Ժողովուրդներն այսօր հավատում են, որ միջազգային խաղաղ համագործակցությունը ռեալ է, որ այն արդեն իրականանում է։

# ԿՈՄՈՒՆԻՍՏԻ ԱՆՁՆԱԿԱՆ ՕՐԻՆԱԿԸ



## ՄԱՐԴՈՒ ՀՄԱՅՔԸ

ԼԵՎՈՆ ԱՆԱՆՅԱՆ

ԼԵՌՆԱՇԽԱՐՀԻ ՔՄԱՀԱՃ ԲՆՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ անձրևը մի առանձին անակնկալ չէ։ Բայց և օդերևութաբան պետք չէ լինել՝ հասկանալու, որ այսպիսի հորդ, խոշորակաթիլ տեղատարափը հղի է հեղեղով։ Մարդիկ պաշարել են կոլտնտեսության գրասենյակի լուսամուտները, մտախոհ նայում են ջրեղեն քարգահին և դատողություններ անում— լա՞վ է, թե՝ վատ այսքան խոնավությունը հողին ու ծառին։

— Միայն թե չափը չանցնի...

Ու «չափը չանցավ». անձրևը դադարում է, Մեղրու ավանային պուրակում մթնշաղն օծվում է սլացիկ չինարիների և ակացիայի թաց բույրով, հուշիկ սոսափում են երկվորյակ սոճիները։

— Բավական թարմացանք, չէ՞, սկսենք՝ մինչև բոլորը հավաքվեն,— երկարուկ սրահում մեղմ հնչում է պրոպագանդիստի բասը։

Ձայնն այնքա՜ն կայտառ է, որ ես ակնհայտ զարմանքով եմ նայում Պավել Առստամյանին։ Եվ իմ տարակույսը լուրջ հիմքեր ունի, քանի որ լավ ծանոթ եմ նրա օրվա ռեժիմին։ Առավոտից վեց ժամ անընդմեջ ոտքի վրա, ապա ստուգողական գրավոր ֆիզիկայից։ Հետո արդյունքների ամփոփում (կարմրելու առիթ չկար), ժամը հինգին՝ տուն, կնոջ հետ կիսելու առտնին հոգսերը, հետո շուկա, գրադարան...

Իսկ հիմա՞... Հիմա կանգնել է աշխարհի քաղաքական քարտեզի առջև այնպիսի անհավատալի աշխույժով, կարծես օրը նոր է բացվել։ Ինչքա՜ն եռանդ է պետք, նաև նվիրում արդեն հիսունը բոլորած մի մարդու՝ այս ամենն անելու և հոգնած չերևալու համար։

Կանգնել է Պավել Առստամյանը, համակրելի ու լրջախոհ, և այժմ իր մասին չէ, որ հոգում է։ Գիտական կոմունիզմի հիմունքներն ուսումնասիրող սեմինարի կոմունիստ-ունկնդիրներից յուրաքանչյուրին նա հիանալի ճանաչում է։ Ո՛չ միայն անուն-ազգանունով, մասնագիտությամբ, պատրաստականությամբ... Տեսել է նրանց գործի մեջ, ուրախության ու տխրության պահերին։ Շատերն իր նախկին աշակերտներն են։ Երևի՛ հոգեբան չեն դառնում, հոգեբան ծնվում են։ Իսկ Առստամյանը շատ է կարևորում հոգեբանական գործոնը։ Նա լավ է ուսումնասիրել լսարանի այսպես կոչված «սոցիալական դիմանկարը»։ Եվ որքան մոտիկից են ճանաչում միմյանց, այնքան ավելի վստահում, հավատում են իրար, այնքան դիպուկ ու շահեկան են դառնում պրոպագանդիստի խոսքն ու խորհուրդը։

Գիտական նորույթների հաղորդում. սա պարապմունքի անբաժան մասն է։ Շուտով կհավաքվեն և ուշացածները, իսկ մինչ այդ անհրաժեշտ է ցրել հոգնությունը, որն անխուսափելի է, երբ ունկնդիրները արշալույսի հետ արթնացող և բարկ արևի տակ աշխատող հողի մշակներն են։ «Դարի կառույցը»— այսպես է վերնագրված այն պլակատը, որ Առստամյանը վաղօրոք պատրաստել և փակցրել է պատին. ԲԱՄ-ի մակետն է։ Նախ փոքր-ինչ վարանոտ, ապա վստահ ու անկաշկանդ նա խոսում է մայրուղու ժողովրդատնտեսական վիթխարի նշանակության, դրա մասշտաբների մասին։ Ցուցափայտը շարժվում է պլակատի վրայով։ Թվեր, փաստեր, հետաքրքրական, երբեմն բանավիճային եզրահանգումներ։ Ներկաները ակտիվ արձագանքում են, լրացնում. անհնար է անտարբեր մնալ, երբ խոսքն այդպիսի կառույցի մասին է։

Առստամյանի հաղորդած ամեն մի նորույթ, լինի դա Սովետական Միությունում ավտոտրանսպորտի զարգացման հեռանկարների, բնության պահպանությանը նվիրված ՄԱԿ-ի նոր որոշման, շշերից պարարտանյութ ստանալու, թե լազերային մկրատների մասին,— կոլտնտեսականներն ունկնդրում են մեծ հետաքրքրությամբ։ Այսպիսի ակտիվ լսարան ես չեմ տեսել։ Եվ ակամա հիշում եմ Մ. Ի. Կալինինի խորհուրդը պրոպագանդիստներին. պարապմունքը պետք է վարել այնպես, որ մարդիկ վիճեն ո՛չ թե ձևականորեն, այլ ըստ էության...

Այսքան ծավալուն եմ ներկայացնում պարապմունքի մուտքը, քանի որ այստեղ ես դրսևորվեցին սեմինարը վարելու Առստամյանի յուրօրինակ ոճը, ուրույն, ուսանելի մեթոդը։ Եվ այս ամենն այնպես նրբորեն է շաղկապված քաղաքականությանը, որ դժվար է զատորոշել՝ որտեղ է սկսվում գիտականը, որտեղ՝ քաղաքականը։

— Եվ այսպես արդեն քսաներեք տարի,— ասում է Մեղրու կոլտնտեսության կուսկազմակերպության քարտուղար **ԵԳՈՐ ԲԱԲԱՅԱՆԸ**։— Քսաներեք տարին ինքնին մի կյանք է, իսկ այնպիսի մարդու համար, ինչպիսին Պավել Առստամյանն է, ժամանակը կրկնակի իմաստ ունի։ Այնպես ենք վարժվել աշխատելու նրա եղանակին, որ դժվարանում եմ ասել, թե հատկապես ո՛րն է նրա դասախոսությունների հմայքը։ Պարապմունքներին սիրով են հաճախում նույնիսկ նրանք, ովքեր ընդգրկված չեն սեմինարում։ Մի՛ք մոռանա, որ մեր տնտեսության տարածքը սփռված է մերձարևադարձայինից մինչև ալպյան գոտի։ Բայց ամեն ամսի 15-ին՝ սեմինարի օրը, ունկնդիրները պարտաճանաչորեն ներկայանում են։

Կոլտնտեսության նվաճումներում կա նաև Պավել Առստամյանի վաստակը. չի եղել մի թեմա, որ ուսումնասիրելիս՝ պրոպագանդիստը չշաղկապի տնտեսության կոնկրետ խնդիրներին ու հոգսերին, չբարձրացնի հուզող հարցեր։ Պարապմունքներից մեկի ընթացքում, երբ խոսք բացվեց առաջավոր փորձն ընդօրինակելու մասին, Առստամյանը վկայակոչեց Լեռնային Ղարաբաղի Մարտունու շրջանի Ճարտարի կոլտնտեսությունը։ Տեղնուտեղը ծնվեց մտահղացումը։ Իսկ ինչո՞ւ, իսկապես, անձամբ չտեսնել այդ ամենը։ Շատ չանցած՝ մենք Ճարտարում էինք։ Տուն բերեցինք խաղողի վազի տեղական սորտեր։ Նոր բարեկամների օրինակով վերակազմեցինք արտադրությունը. կրճատեցինք մեկ բրիգադա, մեքենայացրինք գոմերից աղբահանումը և այլն։



Այնուհետև մեզ այցելեց Ճարտարի գլխավոր գյուղատնտեսը։ Ծանոթացավ գործերի վիճակին, դեղձի կորիզներ տարավ։ Այժմ այնտեղ մի քանի հեկտարի վրա խշշում են դեղձենու մատղաշ տնկիները։ Եվ, թերևս, քչերն են հիշում, որ այդ հիանալի նախաձեռնության հեղինակը մեր պրոպագանդիստն է։ Այդպիսին է Առստամյանը՝ հոգատար, սրտացավ ու մտերիմ. հաճախ չես էլ գիտակցում, որ իմացածիդ համար նրան ես պարտական։

*ԹՐՋՎԱԾ, ՓՈՔՐ-ԻՆՉ ՇՓՈԹԱՀԱՐ, ներս են ընկնում ուշացածները. մեկը՝ դաշտերից, մեկը՝ այգիներից, մեկը՝ ֆերմայից...*

— Դե՛, ինչ, սկսե՞նք,— հայացքը սահեցնելով մարդաշատ սրահով՝ ասում է պրոպագանդիստը։— Այսօր, ինչպես գիտեք, ամփոփում ենք մեր սովորածը։

Այո՛, ես հայտնվել եմ ամփոփիչ պարապմունքին և գիտեմ, որ Առստամյանի համար նախանձելի իրավիճակ չէ։ Չէ՛ որ այժմ և՛ պրոպագանդիստի, և՛ ունկնդիրների պատասխանատու հաշվետվությունն է կազմակերպության առջև՝ ուսումնական տարում տված-ստացած գիտելիքների, նաև այն մասին, թե ինչպես են դրանք շաղկապվել կոլեկտիվի հրատապ խնդիրների լուծմանը։

Ամփոփիչ պարապմունքը, ասես, խմբային վրույց լինի, որի ընթացքում յուրաքանչյուրը, իր համար աննկատ, ստուգարք է հանձնում։ Շոշափվում է նաև «Դասակարգերը և նրանց փոխհարաբերությունները» թեման։ Անասնաբույծ Ռազմիկ Թևոսյանը բնութագրում է դասակարգերի տեղն ու դերը սոցիալիստական հասարակության մեջ։ «Ամբողջ մարդկության առաջին արտադրողական ուժը բանվորն է, աշխատավորը»,— շեշտում է նա Վ. Ի. Լենինի խոսքերը, ապա հանգամանալի վերլուծում բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և մեր մտավորականության ծագման ու հետագա զարգացման փուլերը, նշում դասակարգային տարբերությունների հաղթահարման ուղիները։ Ջնայած կոնսպեկտի առկայությանը, Ռազմիկը հազվադեպ է դիմում գրառումներին, նրա ելույթից պարզ երևում է, որ փաստարկները տսկ դասագրքային չեն (իսկ դասագրքերը, Առստամյանի պահանջով, կոլտնտեսությունն անվճար տվել է ունկնդիրներին), օգտվել է սկզբնաղբյուրներից, լրջորեն նախապատրաստվել։

Հաշվապահ Զարիկ Հայրապետյանը խոսում է պետական ու կոոպերատիվ-կոլտնտեսային սեփականությունների մերձեցման, իսկ այնուհետև մի միասնական համաժողովրդական սեփականության մեջ միաձուլման հնարավորության մասին։ Իբրև կոոպերատիվ-կոլտնտեսային սեփականության համայնացման աստիճանի ընդլայնում, նա նշեց նաև կոլտնտեսությունների խոշորացումը, միջկոլտնտեսային կապերի աճը, պետական սեփականության զարգացումը։ Կոմունիստական բաշխման սկզբունքներին էր նվիրված բրիգադավար Վարդան Բաղդասարյանի ելույթը։

Պարապմունքն ընթանում է անշտապ, ամեն մի հարց քննարկվում է բազմակողմանի։ Մեղրու շրջանը բավական հարուստ նյութեր է տալիս գյուղի և քաղաքի միջև էական տարբերությունների հաղթահարման, սոցիալիստական սեփականության երկու ձևերի մերձեցման, աշխատավորության ինտերնացիոնալ դաստիարակության և կուսակցության ծրագրային այլ խնդիրների հստակ պարզաբանման համար։ Եվ երբ ունկնդիրներն այդ առթիվ արտահայտում էին իրենց տեսակետները, իսկ պրոպագանդիստը հմուտ ռեժիսորի նման մշակում և լրացնում էր ամեն մի «միզանսցեն», ես հասկացա, թե որքա՛ն ճշգրիտ է այն ինֆորմացիան, որ վերցրել էի մամուլից և կուսակցության շրջկոմում։

...Պավել Առստամյանը մեր լավագույն պրոպագանդիստներից է։ Նրա պարապմունքներն անցնում են գաղափարա-տեսական բարձր մակարդակով, կոլեկտիվի խնդիրներին սերտորեն կապված։

...Պրոպագանդիստը կարողացել է հետաքրքրասիրություն հարուցել տեսական հարցերի նկատմամբ, ունկնդիրների մեջ սերմանել քաղաքական գրականությունն ինքնուրույն մշակելու ճաշակ։

երբ ճակատային թերթում տպագրվեցին հետևյալ տողերը. «Կոմունիստներն ու կոմերիտականները հասել են մարտական ու քաղաքական պատրաստականության լավագույն արդյունքների: Արժանավորներից է և ընկ. Առստամյանը» և այլն: Խունացած այդ թղթի կտորը թանկ մասունքի պես եմ պահում. չէ՛ որ դա իմ առաջին մարտական մկրտության վավերաթուղթն է: Մասնակցեցի Բելոռուսիայի ազատագրմանը, հետո Արևելյան Պրուսիայի մարտերին՝ 44-րդ գվարդիական ականանետային բրիգադի կազմում, որպես ջոկի հրամանատար: Կուսակցության շարքերն ընդունվեցի 1944 թվականին, երբ մեր զորքերը պատրաստվում էին գրավել Քյոնիգսբերգը: Ահա կարծես ամենը:

*ԱՌՍՏԱՄՅԱՆԸ ՉԻ ՊԱՏՄՈՒՄ, թե ինչպես է կռվել: Այդ մասին պետք է դատել նրա մարտական «ավարով»: Կարմիր աստղի, Փառքի երրորդ աստիճանի շքանշանները, բազմաթիվ մեդալներն ու շնորհակալագրերը այս առումով շատ են պերճախոս:*

*Զորացրվեց 1947-ին և իմացավ եղբոր զոհվելու լուրը: Սուրենը՝ ֆիզիկայի ֆակուլտետի ուսանողը, մնաց իր երազների կեսճանապարհին: Եվ Պավել Առստամյանը երդվեց գնալ եղբոր ընտրած ուղիով, ամենակարևորը՝ երբեք անտարբեր չլինել չարի ու բռնության հանդեպ: Խաղաղ օրերի ճամփաները նրան ուղեկցեցին Խ. Աբովյանի անվան հայկական մանկավարժական ինստիտուտ, ապա՝ ֆիզիկոս-մանկավարժը ինքնակամ հայտնվեց Մեղրու միջնակարգ դպրոցում: Հիմնավորվեց այստեղ, ամուսնացավ: Կինը՝ Լուսիկ Քամալյանը, շրջանի լավագույն ուսուցչուհիներից է, մայրենի լեզվի ու գրականության ազնիվ հրապույրներն է փոխանցում արդեն քանի՜ սերնդի: Իսկ նրանց հիանալի շառավիղները... Արամն այս տարի կավարտի պոլիտեխնիկականը, Արմենուհին բժշկական ինստիտուտի չորրորդ կուրսի ուսանողուհի է:*

*— 1831 ԹՎԱԿԱՆԻ ՕԳՈՍՏՈՍԻ 29-ԻՆ Ֆարադեյը հայտնագործեց ֆիզիկայի կարևորագույն օրենքներից մեկը՝ էլեկտրամագնիսական ինդուկցիայի (մակածության) օրենքը:— Իններորդ դասարանում այսպես սկսեց նոր թեմայի հաղորդումը Պավել Առստամյանը:— Ո՛չ բոլոր հայտնագործությունների տարեթվերն են հայտնի, իսկ այս մեկի ամսաթիվն էլ գիտենք: Ահա և Ֆարադեյի փորձի մոդելը...*

*Նայում եմ դասարանին: Աշակերտներն այնպիսի՜ հափշտակությամբ են լսում ուսուցչին: Կարելի է վստահ ասել, որ այստեղ, ֆիզիկայի կաբինետում էլ նրանք յուրացնում են նոր թեման: Կաբինետին կից լաբորատորիան է, բոլոր սարքերի ու գործիքների պահոցը. դրանք անհրաժեշտ են փորձերի համար, փորձեր, որոնք գործնականորեն հաստատում են աշակերտների տեսական գիտելիքները, խորացնում նրանց իմացությունը: Այնտեղ կան և հարյուրից ավելի ինքնաշեն սարքեր, որոնց հեղինակները հենց իրենք՝ աշակերտներն են ու նրանց ուսուցիչը: Ուշագրավ է, որ Առստամյանն այդ սարքերին նվիրված զեկուցումով հանդես է եկել հանրապետական մանկավարժական ընթերցումների ժամանակ: Մեծ հետաքրքրություն է հարուցել նաև պինդ, հեղուկ և գազային մարմինների մոլեկուլների շարժումը ցուցադրող նրա պատրաստած մոդելը:*

*Ընդարձակ սեղանին ինդուկցիոն կոճեր են, զգայուն գալվանոմետր, մագնիսներ, հոսանքի մարտկոցներ: Գրատախտակին նկարելու փոխարեն, Առստամյանը համապատասխան գծագրերը ցուցադրում է էպիդիասկոպով: Չորս փորձ, երկու արդյունք— ամփոփում է նա, տալիս սահմանումը: Վերջում աշակերտները դիտում են կինոնկար, համոզվելու, որ մագնիսական դաշտի փոփոխությունը փոփոխական հոսանք է ծնում:*

*Թե որքան է արդյունավետ ուսուցման այդ մեթոդը, ես համոզվեցի, երբ աշակերտները պատմում էին հին դասը: Նրանք լավ էին պատկերացնում երևույթների ֆիզիկական իմաստը և, բնականաբար, նրանց պատասխանները տրամաբանական էին, հստակ: Առստամյանը շտկում էր լեզվական սխալները, օգնում ճիշտ վերարտադրելու թեման:*



*Կոմունիստ Պավել Առստամյանին բնորոշ է նախաձեռնությունը: Նա չի կարող ձեռքերը ծալած նստել, երբ երկրի մանկավարժական միտքը վիթխարի թռիչք է ապրում, երբ ծնվում և պրակտիկայում ստուգվում են բազում շահեկան տեսություններ: Իզուր չէ, որ նրա ծոցատետրում գրառված են Ա. Ս. Մակարենկոյի, Կ. Դ. Ուշինսկու, Յա. Ա. Կամենսկու, Վ. Ա. Սուխոմլինսկու ասույթներն ու մտքերը, որոնք նրա մանկավարժական գործունեության կողմնորոշիչներն են: «Ուսուցչի առաջնահերթ խնդիրն է՝ սաներին գրավել անձնական օրինակով». սա Կամենսկու պատգամն է, որ Առստամյանը սրբորեն կատարում է: Ահա ինչու մի առանձին սիրով է նա հիշում դպրոցի և Մեղրու կոլտնտեսության փոխօգնության արդյունքների մասին: Ա՛յն դպրոցի, որի նոր մասնաշենքի կառուցմանն իր դասարանի հետ խանդավառ մասնակցել է ինքը, և ա՛յն կոլտնտեսության, որի բերքահավաքը կազմակերպվում է ո՛չ առանց իր ու աշակերտների միջամտության: Բնական է, որ կուսկազմակերպության այս ձեռնարկումների ակտիվ նախանձախնդիրներից է Առստամյանը:*

*Մանկավարժական խորհրդի նիստերից մեկում Առստամյանն առաջարկեց անցկացնել առարկայական շաբաթներ: Փորձը հաջող էր, սակայն պարզվեց, որ մի շաբաթում անհնար է ֆիզիկայից կազմակերպել ծավալուն միջոցառումներ: Այս անգամ՝ տասնօրյակ. կոչ արեց նա: Արդյո՞ւնքը: Խնդրե՛մ.*

Տասնօրյակի օրերին իններորդ դասարանցիների արտադրական էքսկուրսիան անցավ Ագարակի պղնձամոլիբդենային կոմբինատում: Նրանք ծանոթացան մոլիբդենի և պղնձի խտանյութերի ստացման տեխնոլոգիական պրոցեսներին, որոնք կապված են թրջման ֆիզիկական երևույթների հետ: Աշակերտներն իրենք կարդացին զեկուցումներ՝ նվիրված Ջորդանո Բրունոյի նահատակման 375-ամյակին, Ալբերտ Մակլեյոնի գիտական գործունեությանը, Երկրի բնական մոլորակին և այլ թեմաների: Նրանք եղան Մեղրու օդերևութաբանական կայանում: Հաջորդ օրը ութերորդցիներինն էր: Զեկուցումներ կարդացին նաև ուսուցիչները: Վեցերորդ դասարանցիները սնդիկային բարոմետրով չափեցին մթնոլորտային ճնշումը ավանում և այն համեմատեցին նորմալ ճնշման հետ: Դպրոցական ռադիոհանգույցով հաղորդվում էին ֆիզիկայից ու մաթեմատիկայից «5» և «2» ստացող աշակերտների անունները: Ցուցադրվեցին 30-ից ավելի ուսումնական ու գիտական ֆիլմեր, լույս ընծայվեցին պատի թերթեր...

*ԱՌՍՏԱՄՅԱՆԸ ԱՎԱՆԴՈՒՄ Է ՆԱԵՎ ԱՍՏՂԱԳԻՏՈՒԹՅՈՒՆ: Ամեն տարի նա աշակերտներին հեռավոր էքսկուրսիայի է տանում Բյուրական, որպեսզի նրանք ճշտեն տեսական գիտելիքները, ծանոթանան աստղաֆիզիկայի նվաճումներին: Պատահական չէ, որ ակադեմիկոս Վ. Համբարձումյանի հանձնարարությամբ, աստղադիտարանի օպտիկա-մեխանիկական լաբորատորիան դպրոցին է նվիրել Դ. Դ. Մաքսուտովի սիստեմի «ԲԱՄ—1» տիպի 140 մմ տրամագծով մի աստղադիտակ: Անհանգիստ, որոնող մանկավարժն անընդհատ հարստացնում է իր «ստեղծագործական լաբորատորիան», լրացնում, ստուգում է իր մանկավարժական գիտելիքներն ու համոզմունքները:*

*Այսպիսի՛ն է Պավել Առստամյանը: Եթե գործն սկսել է, ուրեմն՝ հոգնություն չկա, ձանձրույթ չկա. պետք է մինչև վերջ հասցնի: Իսկ նոր նախաձեռնությունների ասպարեզ շատ ունի նա: «Գիտելիք» հանրապետական ընկերության Մեղրու մասնաճյուղի աթեիզմի բաժանմունքի վարիչն է և արժանացել է պատվոգրի՝ դասախոսական պրոպագանդային ակտիվորեն մասնակցելու, մեթոդա-կազմակերպական լայն գործունեության համար: Հպարտությամբ է կրում և այդ առթիվ ստացած հուշանվերը՝ ձեռքի ժամացույցը: Առստամյանը դպրոցի քաղինֆորմատորն է, ժողովրդական վերահսկողության խմբի ղեկավարը, կուսբյուրոյի քարտուղարի տեղակալը... Խոստովանենք՝ մի քիչ շատ է մեկ մարդու համար: Թերևս միայն իրեն է հայտնի, թե ի՛նչ է նշանակում ձեռնարկել այսքան գործի, այրվել այդ ամենի համար ու կրկին՝ շարժման մեջ, կրկին կլանված վաղվա հոգսով:*

*Թերթում եմ դպրոցի կուսժողովների արձանագրությունները, որոնք ինչ-որ չափով կոմունիստների գործունեության հայելին են: Եվ ի՛նչ հարց էլ քննարկ-*

վել է՝ դասղեկների անելիքների, կարգապահության, դպրոցական հողամասի օգտագործման, շեֆական աշխատանքի, թե աշակերտների ռազմա-հայրենասիրական դաստիարակության մասին, Առստամյանի ելույթը կրքոտ է ու գործնական: Նրա խոսքը գործ է: Եթե թերությունների առջև աչք ես փակում, ուրեմն՝ հաշտվում ես դրանց գոյության հետ, իսկ Առստամյանն ուզում է անթերի տեսնել ուսումնական պրոցեսը:

Տարիներ առաջ նա վերջին զանգից առաջ հանձնարարեց իր շրջանավարտներին՝ գրել իրենց երազանքների ու ծրագրերի մասին: Անսովոր հանձնարարություն ֆիզիկայի ուսուցչի կողմից, բայց սաները գրեցին, ապա ծրարեցին «դպրոցական ամենաազնիվ շարադրությունը» (իրենց իսկ խոստովանությամբ), հանձնեցին դասղեկին: Տասը տարի անց նրանք կրկին հավաքվեցին նույն դասասենյակում, յուրաքանչյուրն զբաղեցրեց իր նստարանը, հնչեց զանգը: Ներս մտավ ընկեր Առստամյանը: Այս անգամ, սակայն, նա դաս չհարցրեց, բացեց ծրարները, և շունչը պահած դասարանը վերստին ապրեց իր պատանեկան իղձերի անուշ հեքիաթը...

Թե ինչ պատմեց ՀԵՐԲԵՐՏ ՀՈՎԱԿԻՄՅԱՆԸ. Ագարակի պղնձամոլիբդենային կոմբինատում մի շարք նորարարական առաջարկներ եմ արել, որոնց տնտեսական օգուտը մեծ է: Եվ միշտ առաջինը ուսուցչիս եմ հայտնում իմ հաջողությունների մասին. չէ որ նա է դրել այն հիմնապատերը, որոնց վրա ձևավորվել է մեր անհատականությունը: Ընկեր Առստամյանին մենք պարտական ենք մեզ երբեք չլքող այն զգացողության համար, թե ֆիզիկան լոկ չոր բանաձևեր ու օրենքներ չէ: Ընկեր Առստամյանը պարզ ու հասկանալի է ինչպես դասի ժամանակ, այնպես էլ դպրոցից դուրս: Հմուտ ու գիտակ իր գործին՝ նա փշրում է խորթության այն պատնեշը, որ երբեմն բարձրանում է աշակերտի և ուսուցչի միջև:

— Նրան այդպես են ճանաչում Մեղրիում,— ավելացնում է ծնողական կոմիտեի նախագահ ԲԵՆԻԿ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԸ:— Ուզում եմ վերհիշել մի դեպք: Տղաս սովորում էր մի դասարանում, որն աչքի էր ընկնում անպարտաճանաչությամբ ու անկարգապահությամբ: Խնդրեցինք ընկեր Առստամյանին վերցնել դասղեկությունը: Նախ հրաժարվեց (իր դասարանն ուներ), հետո համաձայնեց. պայմանով, որ ծնողներս օգնենք իրեն: Խոստացանք: Տարեվերջին դասարանը դպրոցում ամենաօրինակելիներից էր: Միայն մենք գիտեինք, թե ի՛նչ ջանքերով Առստամյանը կարգի բերեց մեր «ըմբոստ» երեխաներին: Հաճախ մինչ ուշ երեկո շրջում էինք աշակերտների տները, օգնում, սովորեցնում: Փաստը եզակի չէ: Ես գիտեմ, որ այս տարի ևս Առստամյանի դասարանը շահել է միջդասարանային փոխանցիկ դրոշը:

ՊԱՎԵԼ ԱՌՍՏԱՄՅԱՆԸ ԱՅՆ ԵՐՋԱՆԻԿՆԵՐԻՑ է, ում կոչումն ու պարտականությունը ներդաշնակ են: Եվ այդ ներդաշնակ կյանքի արժանի գնահատականը նրա հարյուրավոր սաների երախտագետ սերն է, վաստակած մեծ հեղինակությունը... Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանը: Ամեն սեպտեմբեր գործելու և ստեղծելու ակտիվ լիցք է բերում նրան, հանձնարարությունները սրտով ու խղճով կատարելու հրճվանք:

Ահա ինչու, երբ տուն էի դառնում սեմինարից, մտածում էի, թե Առստամյանը ծնվել է քաղաշխատող դառնալու:

Երբ նրան տեսա իր հողամասում աշխատելիս, ինձ թվաց, թե այդ մարդը հողագործ է ծնվել:

Ֆիզիկայի դասը լսելիս, ինձ համակել էր մի միտք. եթե նման մի ուսուցիչ ունենայի, անպայման ֆիզիկոս կդառնայի:

Հանձին նրա ես տեսա կոմունիստին, պրոպագանդիստին, քաղաքացուն, մանկավարժին. այդ ամենն առանց ինքնահանդգստացման, առանց արտաքին փայլի: Տեսա սովետական մարդուն իր ուրույն նկարագրով, որի առանձնահատկությունը առինքնող հմայքն է— անկասպտելի, անկրկնելի...

# ԵՐԻՏԱՍԱՐԴ ԳԻՏԱԿԱՆ ԱՇԽԱՏՈՂԻ ԱՄԲԻՈՆ

## ԱՊՐԵԼԱԿԵՐՊԻ ՎԵՐԱՐՏԱԴՐՄԱՆ ՈՒ ԳՆԱՀԱՏՄԱՆ ՊՐՈԲԼԵՄԻ ՇՈՒՐՋ

Ա. Ս. ԱԴԻԲԵԿՅԱՆ

ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԾԱՎԱԼՈՒՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ պրակտիկան, որի ընթացքում կոմունիստական հասարակության հիմքերն են արկանվում և նոր մարդը՝ կոմունիստական անձնավորությունն է ձևավորվում, մարքսիստ-սոցիոլոգների առջև խնդիր է դնում այդ պրոցեսի օրինաչափություններն ուսումնասիրել ամենայն խորությամբ:

Անձնավորության սոցիոլոգիային հատկապես հետաքրքրում են սոցիալիստական հասարակության անձի կոնկրետ պատմական հատկանշները և այն հանգամանքները, որոնք ազդում են նրա կոմունիստական հատկանիշների ու որակների ձևավորման վրա:

Սույն հոդվածում արծարծվում է անձի սոցիալական գործունեության և նրա արժույթային կողմնորոշման «ժամանակային ուղղության» հիպոթեզը, որը կարող է անձի ապրելակերպի գնահատման չափանիշը դառնալ, նրա իրագործման և սոցիալական ակտիվության առումով: Բացի այդ, հնարավոր է գտնել «ժամանակային ուղղության» կախվածությունը անձի տարիքային տարբեր ժամանակահատվածներից, որը և հնարավորություն կընձեռի վեր հանելու անձի ողջ կենսագործունեության և «ապրելակերպի» փոփոխությունների դինամիկան ու նրա հասարակական ակտիվությունը:

Հիպոթեզի արծարծման և հիմնավորման ընթացակարգը, որը վերաբերում է սոցիոլոգիական հետազոտությունների նախնական փուլին[1], նախատեսում է պրոբլեմի իմաստավորումը հիմնական հասկացությունների անալիզի միջոցով մարքսիստական ընդհանուր սոցիոլոգիական տեսության առումով:

«Հասարակություն» և «անձ» հասկացությունների վերլուծման մեր ելակետը պատմության մատերիալիստական ըմբռնումն է: «Նոր մատերիալիզմի տեսակետը,— գրում է Մարքսը,— մարդկային հասարակությունն է կամ հասարակականացած մարդկությունը»[2]: Անձ և հասարակություն հասկացությունների նույնությունն անկասկած է և կարելի է հաստատել հասարակության «մարդկային էության» և մարդու «հասարակական էության» երկմիասնությամբ: Պրոցեսուալ դիտարկման ժամանակ այդ երկմիասնությունը պատկերացվում է որպես մարդու հասարակական էության (հասարակական հարաբերությունների միասնության) զարգացման պրոցես և որպես մարդու հասարակական բուն էության զարգացման պատմություն: Եթե առաջին դեպքում ակնբախ են մարդու հասարակական հարաբերությունները և նրանց զարգացումը, ապա երկրորդ դեպքում՝ մարդն իր հասարակական հարաբերություններով և դրանց փոփոխմամբ:

Ուսումնասիրելով և հետազոտելով մարդկային ողջ պատմությունն իր հիմնական օրենքների բարդ ընթացքում, Կ. Մարքսը վարպետորեն բացահայտեց վերոհիշյալ երկու պրոցեսներին ներհատուկ հակասական օրինաչափու-

թյունները և միանգամայն նորովի վերլուծեց հասարակական կյանքի առաջընթացի շարժառիթներն ու նկրտումները։ Այդ պահից ի վեր հայտնի դարձավ, որ հասարակությունը արտադրական և դրանով պայմանավորված բոլոր հարաբերությունների ամբողջություն է, իսկ անձն այդ հարաբերությունների պերսոնիֆիկացիան, որևէ հանրության անդամի վրա։ Նման մոտեցման դեպքում արտադրաձևի զարգացումը պայմանավորում է հասարակության և անձի փոփոխումը։ Մարդն իր իսկ հասարակական հարաբերությունների զարգացման տեսանկյունից հետազոտում է, թե ինչպես են մարդիկ գիտակցել սեփական հարաբերությունների սահմանափակությունը, փոխել դրանք, միաժամանակ հարափոխելով նաև իրենց։ Այս դեպքում մարդու կամքը և նրա պահանջների գիտակցումը ընդունվում են որպես նրանց սոցիալ գործողությունների բնորոշիչ։

Նման մոտեցման դեպքում ի՞նչ տեսք ունեն հասարակությունը և անձը։

«Պատմությունը՝ ո չ ա յ լ ի ն չ է, քան իր նպատակները հետապնդող մարդու գործունեությունը»,— գրել է Մարքսը[3]։— Նա պատմական զարգացման պրոցեսը բնորոշում է իբրև «սերունդների հաջորդականություն, որոնցից ամեն մեկը օգտագործում է նյութերը, կապիտալները և արտադրաուժերը, որոնք ժառանգել է բոլոր նախորդ սերունդներից»[4]։ Բնական է, որ սերունդները ժառանգում են ինչպես նյութական, այնպես էլ հոգևոր կուլտուրան, այսինքն՝ նախորդ սերունդների նվաճումները։ Այդ կուլտուրան օգտագործելու համար սերունդներն անպայման պետք է ժառանգեն նաև այն հասարակական հարաբերությունները, որոնց հիման վրա ստեղծվել են նյութական և հոգևոր կուլտուրաները, բացի հեղափոխական իրավիճակից, երբ սերունդները ժխտում են հին արտադրահարաբերությունները և նոր հասարակարգ են հաստատում։ Այսպիսով, պատմական պրոցեսը կարելի է նկարագրել երեք հասկացությամբ. կուլտուրա, հաղորդաեղանակ և մարդկային սերունդ։

Կուլտուրա ասելով հասկանում ենք մարդու գործունեության արդյունքների ամբողջությունը, որի մեջ մարդն իրայնացնում է իր էությունը և այն ժառանգում հաջորդ սերնդին։ Հաղորդակցման պրոցեսը, ինչպես և դա ապահովող մեխանիզմները, լիովին կախված են հասարակական հարաբերություններից և առավել՝ արտադրաեղանակից։ Պատմության՝ որպես բնապատմական պրոցեսի մարքսյան սահմանումից բխում է երեք հիմնական հաղորդաձև՝ բնական, բնապատմական և պատմական։ Դասակարգային հասարակությունների «բնականության» մասին Ֆ. Էնգելսը նշել է. «Չնայած այն բանին, որ պատմության մեջ գործում են գիտակցող և նպատակավոր մարդիկ, անհամար անհատական ձգտումները և սոցիալ գործողությունների բախումները պատմությունը հանգեցնում են այնպիսի վիճակի, որը նման է գիտակցությունից զուրկ բնությանը»[5]։ Դրան հակառակ, «բոլոր նախկին շարժումներից կոմունիզմը տարբերվում է նրանով, որ ...առաջին անգամ բոլոր տարերայնորեն առաջացած նախադրյալները գիտակցաբար համարում է նախորդ սերունդների կերտվածք, զրկում է այդ նախադրյալները տարերայնությունից և դրանք ենթարկում միավորված անհատների իշխանությանը»[6]։

Այսպիսով, բնականաբար փոփոխվող կուլտուրաներում տեղի ունի հասարակական պրոցեսի սոցիալ-անգիտակից կառավարում, իսկ պատմականորեն զարգացող կուլտուրաներում՝ գիտակցական։ Առաջին տիպի օրինակ են, այսպես կոչված, «ավանդական» հասարակությունները, որոնք իրենց սերունդներին վերագրում են «ավանդական» կենսաձևեր, իսկ սերունդներն այդ կենսաձևերի իրացման պրոցեսում անգիտակցաբար դառնում են կուլտուրայի հաղորդողը։ Դրա շնորհիվ կուլտուրան հաղորդվում է անփոփոխ, իսկ նրանում կատարված փոփոխությունները կախում չունեն մարդկանց գիտակցությունից և կամքից, այլ միայն արտաքին, պատահական՝ բնական գործոններից։

Բոլոր դասակարգային հասարակությունների կուլտուրաները բնափոփոխ են, բացի կապիտալիզմի վրա հիմնված կուլտուրաներից. կապիտալիստական ֆորմացիայում առաջանում և զարգանում է պրոլետարիատը, որի կենսաձևերի օբյեկտիվ պայմանները թելադրում են նրան գիտակցաբար նոր հասարա-



կարգ կառուցել։ Իսկ կապիտալիստն իր հերթին ձգտում է անփոփոխ պահել իրեն ստեղծող պայմանները, ուստի և կապիտալիստական ֆորմացիայի կուլտուրան բնապատմական փոփոխվող տիպին է պատկանում։ Մինչ կոմունիզմ հաստատող սերունդները, բռնելով պատմական զարգացման ուղին, գիտակցաբար վերափոխում են նախորդ սերունդների կուլտուրան։ Կուլտուրական ժառանգության հանդեպ ցուցաբերած այս վերաբերմունքից բխում է հաղորդակցման երեք կողմ՝ քննադատականություն, հեղափոխականություն և հոգևոր ժառանգության յուրացում։ Հաղորդակցման մեխանիզմի առաջին կողմը սերունդներից պահանջում է կուլտուրական ժառանգության պատմական սահմանափակության քննադատական ըմբռնում. իսկ երկրորդը՝ հեղափոխականությունը՝ թելադրում է խորտակել այն ամենը, ինչ արգելակում է պատմական առաջընթացը։ Երրորդ կողմը պահանջում է նախորդ սերունդների նվաճումների պահպանումը և հավելումը։

Հաղորդակցվելով ժառանգվող կուլտուրային, այդ պրոցեսի շնորհիվ ամեն սերունդ յուրացնում է իր «մարդկային էությունը»։ Որքան բարձր է յուրացման մակարդակը, այնքան բարձր է նրա կուլտուրան, նրա անձնական սոցիալական արժույթը։ Բայց դասակարգային հասարակություններում յուրացումը կախված է հասարակության կառուցվածքից։ Ուստի, պրոլետարիատի պատմական նպատակը դասակարգային հարաբերությունների վերացումն է։ Գործելով իր պատմական նպատակի ու շահերի կենսագործման համար, յուրաքանչյուր սերունդ իր հասումներն իրայնացնում է մշակույթում, որի շնորհիվ հաջորդ սերունդները հնարավորություն են ունենում հաղորդակցվել դրան։ Այս իմաստով կուլտուրան հասարակական պայմանների ու հասումների կուտակիչի դեր է խաղում, որի հիման վրա հետագա սերունդները շարունակում են հաղորդակցման ընթացքը։ Ժառանգվող կուլտուրան, ըստ իր զարգացման մակարդակի, սահմանափակում է սերնդի հասարակական գործունեությունը, նրան վերագրելով որոշակի ապրելակերպ, կուլտուրական իդեալներ և ձգտումներ, նմանապես և դրանց իրացման եղանակ։

Հետևաբար, անձի պատմական դերը այն պայմանների զարգացումն է, որի բուն արգասիքն ինքն է, այսինքն՝ հաղորդակցվող կուլտուրայի հավելումը։

Այսպիսով, հասարակությունն իր կուլտուր-պատմական դրսևորումներով Մարդ-արարչի զարգացող գործունեության արգասիք է[7], որում առարկայացված են նրա թե՛ օբյեկտիվ հասումները և թե՛ սուբյեկտիվ մտահղացումները։ Անձը բնորոշվում է իր կենսաձևի միջոցով, այսինքն՝ ինչպես նրա օբյեկտիվ վիճակով, նույնպես և սուբյեկտիվ ձգտումներով։ Իսկ պատմությունն ամբողջովին ս ո ց ի ա լ - կ ո ւ լ տ ո ւ ր ա կ ա ն մի պրոցես է, որի մեջ սոցիալ համագործակցության շնորհիվ սերունդները հաղորդակցում են իրար մարդու նյութականացված էությունը՝ կուլտուրան։

Անձի կենսաձևի ուսումնասիրությունն արժեքավոր է այն առումով, որ նրա մեջ արտացոլվում են ո՛չ միայն նրա սոցիալական գործունեության հիմնական ձևերը, այլև սուբյեկտիվ հավակնությունները, այսինքն՝ անձի ներթաքուն հասարակական ակտիվությունը, որը նրան մղում է իրեն ծնող պայմանների փոփոխությանը։ Եթե հասարակական օբյեկտիվ պայմանները տարբեր դասակարգերի կամ խավերի անդամներին դնում են միանման հարաբերությունների մեջ, ապա այդ նույն դասակարգի անդամներն իրենց անհատական կենսաձևերում տարբեր են վ ե ր ա բ ե ր ո ւ մ այդ պայմաններին։ Վ. Ի. Լենինը նշում էր. «Այն ստրուկը, որը գիտակցում է իր ստրկական դրությունը և պայքարում նրա դեմ, հեղափոխական է։ Այն ստրուկը, որը չի գիտակցում իր ստրկությունը և իր գոյությունը քարշ է տալիս լուռ, անգիտակցական և անբարբառ ստրկական կյանքի մեջ, պարզապես ստրուկ է։ Այն ստրուկը, որի փսլինքը թափվում է, երբ ինքնագոհ նկարագրում է ստրկական կյանքի հրաշալիքներն ու հիանում բարի և լավ տիրոջով, ստրկամիտ է, ցածրոգի»[8]։ Մյուս կողմից, տարբեր դասակարգերի անդամներ կարող են ունենալ միևնույն կենսաձևեր կամ պատմա-կուլտուրական դեր։ Որպես օրինակ կարելի է բերել պրոլետարական հեղափոխական շարժման մեջ մտած բուրժուական և ուրիշ

ինչ-որ ուրիշ անձի, ապա նա որոշ չափով պետք է ընդունի իրավիճակների փոփոխության հնարավորությունը, որը համազոր է ներկայի դիրքորոշմանը: Հետևաբար, ժամանակային դիրքորոշումը բնորոշում է անձի հակումը դեպի ինքնապահպանման, կամ փոխակերպման, կամ բնական փոփոխման: Այս տեսակետից անձը կարելի է բնորոշել իր սուբյեկտիվ ձգտումներով, հակումներով, նպատակներով, որպես պահպանողական, կամ վերափոխիչ, կամ իր սեփական կենսագործունեության մեջ կատարվող փոփոխության «դիտարկու»: Անձի կենսական ձգտումները պետք է գնահատել նաև իրագործման հավանականությունից ելնելով, որովհետև միևնույն կենսաձևը մի անհատի համար կարող է լինել անհասանելի ապագա, իսկ մյուսի համար՝ ելակետ: Այլ կերպ ասած, նույն նպատակին հասնելու համար տարբեր անհատներ ունեն տարբեր հավանականություն, որը կախված է օբյեկտիվ պայմաններից: Բացի հասարակական վիճակից, այդ օբյեկտիվ պայմաններից են անհատի ծագումը, տնտեսական վիճակը, կրթությունը և այլն: Բայց եթե միևնույն սոցիալական խավի կամ դասակարգի անդամները հավասար հավանականություն ունեն իրենց նպատակների կենսագործման համար, դրանց կարող են հասնել լոկ նրանք, ովքեր առավել ինտենսիվ ու արդյունավետ զարգացմամբ հաղթահարում են օբյեկտիվ նախադրյալները: Բացի դրանից, անհատը պետք է ունենա «իրողության» զգացում և կանխավ չձգտի անհասանելի նպատակի, այլ հաշվի առնի այն հնարավորությունները, որոնք կախում ունեն օբյեկտիվ պայմաններից: Որպես օրինակ քննենք մի քանի տվյալներ մեր ժամանակակիցների կենսապլանների մասին[16]:

Հետազոտությունները ցույց են տվել, որ կրթությունը և որակավորումը բարձրացնել ցանկացողների միայն 25—10 տոկոսն է իրականացնում իր մտադրությունները: Կադրերի հոսունության անալիզը վկայում է, որ «ծառայության մեջ առաջ չգնալու» պատճառով աշխատանքից հեռացողների մեծամասնությունը գտնում է ավելի հետաքրքրական և բարձր (20 տոկոս) վարձատրվող աշխատանք:

Հետազոտությունները ցույց են տալիս, որ մեր հասարակարգի ընձեռած դեռ ոչ բոլոր հնարավորություններն են իրականացվում: Դրանցից նշենք միայն մեկը՝ բուհերի առաջին կուրսեր ընդունված 3 ուսանողից միայն երկուսն են դիպլոմ ստանում: Այս իմաստով պատրանքայնություն է, որ անհատներն իրենց մտադրությունների իրականացման համար չեն ձգտում ավելի խոր և եռանդուն զարգացնել անձնական ունակությունները, գիտելիքները և որակավորման աստիճանները: Դրանով իսկ՝ բուհ ընդունվելու կամ պաշտոն զբաղեցնելու «մրցակցությունը» լինում է բավականին ցածր: Տվյալների համաձայն, բուհ ընդունվել ցանկացողների 50 տոկոսը անբավարար գնահատականներ է ստացել հենց առաջին քննությունների ժամանակ. բուհերից հեռացողների 75 տոկոսը I և II կուրսեցիներ են: Իսկ արտադրության մեջ վարպետների 50 տոկոսը նշել է, որ իր պաշտոնի ստանձնման պատճառը «նշանակումն է», «պարագաների բերումը», 35 տոկոսը՝ բարձր աշխատավարձը, և միայն 2,5 տոկոսը՝ ներքին մղումը. այսինքն՝ նրանց մեծ մասը պոտենցիալ պատրաստականություն չի ունեցել այդ պաշտոնը զբաղեցնելու համար: Այս ամենի հետևանքով մեր հասարակությունը ոչ միայն տարեկան պակաս է ստանում հարյուր հազարավոր մասնագետներ, այլև հաճախ ցածր է լինում նոր կադրերի որակը:

Այս եղանակով կարելի է վերլուծել ամեն մի կենսական պլան կամ մտադրություն՝ բացահայտելով դրա սոցիալական նշանակությունը, իրականացման հնարավորության և անհատի ծագման միջև եղած կապը, ինչպես անձնական ակտիվության, այնպես էլ օբյեկտիվ պայմանների հնարավորությունների տեսանկյունից: Մեր կողմից առաջադրվող չափանիշները՝ սոցիալական գործունեության ժամանակային ուղղվածությունը և ժամանակի հանդեպ դիրքորոշումը, կարող են դառնալ այն հիմքը, որի վրա հնարավոր կլինի անհատի սոցիալական գործունեության ամբողջության ամփոփումը մի միասնական կենսաձևի մեջ, իսկ անհատների գործունեությունը կգնահատվի այն տեսանկյունից, թե ինչպիսի ակտիվությամբ (կամ պասսիվությամբ) են նրանք աջակցում (կամ արգելակում) մեր հասարակության առաջընթացը: Եթե անձն ակտիվորեն իրագործում է նպատակն ու գերադասելի կենսաձևը, ապա նա անհրաժեշտորեն պետք է ընդունի իրավիճակների փոփոխումը, այսինքն, դիրքորոշված լինի դեպի ներկան: Հակառակ դեպքում նա իր նպատակները պետք է դարձնի ապագայական կամ թողնի անցյալին: Այսպիսով, դիրքորոշման մեջ ներկայի առկայությունը ցույց է տալիս անձի ակտիվությունը (բացակայության դեպքում՝ պասսիվությունը), իսկ հավակնությունների ժամանակային բնորոշումը՝ այդ նպատակների իրական կամ պատրանքային լինելը:

Հետապնդելով անձի հիմնական կենսաձգտումները և նվաճման միջոցները, որոնք մասամբ օբյեկտիվորեն նախորոշված են, իսկ մասամբ կախված են անձնական եռանդից, հնարավոր է պատկերացնել, թե տվյալ կենսաձևի իրականացնողն ինչպիսի հետագա սոցիալական վարք կունենա, նկատի առնելով, որ կենսագործունեության ժամանակամիջոցում նրա արժույթային դիրքորոշումները փոփոխվում են: Այժմ հնարավոր է հաշվարկել անձերի դիրքորոշման ժամանակային հեռանկարների թիվը, որոնք հնարավորություն կտան էմպիրիկ հետազոտություններում վերապատկերացված կենսաձևերը գնահատել կոմունիստական անձի ժամանակային դիրքորոշման հետ: Այս խնդրի համար անհրաժեշտ է կառուցել ձևական տիպարակարգ, բոլոր հնարավոր ժամանակային դիրքորոշումները սպառելով, այնուհետև՝ անհրաժեշտ է բացահայտել ստացված տիպարների իմաստը, հիմք ունենալով վերևում տրված հիմնական հասկացությունների վերլուծությունը:

Այսպիսով, անձի սոցիալական գործունեության ժամանակային ուղղվածությունը և նրա դիրքորոշումը ժամանակի նկատմամբ ամփոփելով իր մեջ կենսաձևի սոցիալական արժույթը, հնարավորություն է ընձեռում բացահայտելու անձի պատմա-կուլտուրական դերը կենսագործման ողջ պրոցեսի ընթացքում:

### ՕԳՏԱԳՈՐԾՎԱԾ ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՑԱՆԿ


1 В. А. Ядов. Социологическое исследование. М., 1972, с. 65—66.
2 К. Маркс и Ф. Энгельс. Соч., т. 3, с. 3.
3 К. Маркс и Ф. Энгельс. Соч., т. 2, с. 102.
4 К. Маркс и Ф. Энгельс. Соч., т. 3, с. 44—45.
5 К. Маркс и Ф. Энгельс. Соч., т. 21, с. 305—306, т. 37, с. 395.
6 К. Маркс и Ф. Энгельс. Соч., т. 3, с. 70—71.
7 С. Н. Артановский. К вопросу о понятии культура. В сб.: Герценовские чтения. Сб. XX., Л., 1967, с. 21—25.
8 Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 13, էջ 51:
9. К. Маркс и Ф. Энгельс. Соч., т. 16, с. 147.
10 К. Маркс и Ф. Энгельс. Соч., т. 46, ч. I, с. 252—254.
11 Там же, с. 222.
12 К. Маркс и Ф. Энгельс. Соч., т. 46, ч. 2, с. 221.
13 К. Маркс и Ф. Энгельс. Соч., т. 23, с. 89—90, 369—371.
14 К. Маркс и Ф. Энгельс. Соч., т. 8, с. 38.
15 К. Маркс и Ф. Энгельс. Из ранних произведений, с. 600.
16 Տվյալներն իրենց համադրությամբ վերցված են հետևյալ աղբյուրներից. М. Н. Руткевич, Ф. Р. Филиппов. Социальные перемещения. М., 1970; Социальная структура населения Сибири. Новосибирск, 1970, с. 112, 107—108; Народное хозяйство СССР в 1972 г., М., 1973, с. 627—645; Молодежь, образование и НТР. Новосибирск, 1971, с. 8—39; Социологические проблемы образования и воспитания. М., 1973, с. 22—28, 144—150; Социологические проблемы труда и производства (сов-польск. иссл.). М., 1969, с. 144—220; В. Т. Лисовский. Жизненные планы молодежи. «Человек и общество», уч. зап., вып. 2, Л., 1967, с. 101—121.

# ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ

## ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ԻՄՊԵՐԻԱԼԻԶՄԻ ՄԵՐԿԱՑՈՒՄԸ

ՀԻՄՆԱԿԱՆՈՒՄ ԱՅՍ ԽՆԴԻՐՆ է իր փաստալից լուծումը գտել վերջերս ռուսերեն լույս տեսած Ստ. Ստեփանյանի Հայաստանը իմպերիալիստական Գերմանիայի քաղաքականության մեջ (19-րդ դարի վերջին 20-րդ դարի սկզբին) խորագիրը կրող գրքում*): Իհարկե, գերմանական մարտնչող ու գիշատիչ իմպերիալիզմի գիտական քննադատությունը տրվել է ՍՍՀՄ-ի, ԳԴՀ-ի և սոցիալիստական մյուս երկրների մարքսիստ-պատմաբանների տասնյակ ու տասնյակ աշխատություններում, սակայն գրախոսվող գրքի հեղինակին հաջողվել է ի մի բերել և նորահայտ փաստերով լրացնել Հայաստանի ու հայ ժողովրդի նկատմամբ բիսմարկյան ու վիլհելմյան Գերմանիայի որդեգրած նենգ ու դաժան քաղաքականության պատմությունը, որի լուսաբանմամբ, ինչպես իրավացիորեն նշում է գրքի առաջաբանում ակադեմիկոս Ի. Ի. Մինցը, «Գերմանական իմպերիալիզմի գիշատիչ ու ագրեսիվ քաղաքականության մասին գրականության մեջ ներմուծվում է նոր փաստագրական նյութ» (էջ 4): Իսկ այդ նյութի արժեքը առավել մեծանում է այն բանով, որ դրա մի զգալի մասը նվազ մատչելի է և, թերևս Ստ. Ստեփանյանը Սովետական Հայաստանի պատմաբաններից առաջինն է, որ օգտվել է եղբայրական սոցիալիստական երկրի՝ Գերմանական Դեմոկրատական Հանրապետության համապատասխան արխիվային ֆոնդերից ու գրադարաններից և հաջողությամբ վեր հանել անհրաժեշտ փաստաթղթերը:

Մյուս արժանիքը, դա մեզ մոտ հրապարակված գերմանական պաշտոնական փաստաթղթերի լայն օգտագործումն է („Die Grosse Politik der Europaischen Kabinette 1871—1914„. „Deutschland und Armenien 1914—1918“ և այլն):

*) Ст. Степанян. Армения в политике империалистической Германии (конец XIX—начало XX века). Издательство «Айастан», Ереван, 1975, 242 стр.

Այսպես, հետաքրքրական են գրքի առաջին գլխում (Գերմանական իմպերիալիզմի էքսպանսիան Մերձավոր Արևելքում 19-րդ դարի վերջին 20-րդ դարի սկզբին և Հայկական հարցը) բերված այն փաստերը, որոնք մերկացնում են կայզերական Գերմանիայի կառավարողների՝ Վիլհելմ II-ի, կանցլեր Հոհենլոեի, արտաքին գործերի պետական քարտուղար Ցիմմերմանի և մյուսների մերթ անհավոր չափով փարիսեցի, մերթ բացահայտ ցինիկ վարքագիծը Արևմտյան Հայաստանի ու նրա հայ ազգաբնակչության ճակատագրի հանդեպ՝ 1894—1896 թթ. հայտնի ջարդերի ժամանակ:

«Պե՞տք է արդյոք մենք պատերազմ մղենք սուլթանի հետ հայկական անկարգությունների համար»,— հարցնում է Հ. Հոհենլոեն ռայխստագին ուղղված իր մի նամակում և ինքն էլ պատասխանում. «...Ես կցանկանայի տեսնել ռայխստագի անդամների դեմքերը, երբ նրանց կտեղեկացնեի, որ մենք զորահավաք ենք հայտարարում Թուրքիայի դեմ պատերազմելու համար: Ռայխստագի ամեն մի անդամ հանդես կգար իմ դեմ Բիսմարկի խոսքերով՝ պոմերանյան գրենադյորի ոսկորների մասին...» (էջ 52):

Իսկ թուրքասեր ու հայատյաց կայզեր Վիլհելմ II-ը սուլթան Աբդուլ-Համիդ II-ի «սուվերեն իրավունքն» էր համարում «հայերի ապըստամբության ճնշումը» (էջ 53):

Նույնիսկ գերմանական իմպերիալիզմի մոլի ջատագով Պ. Ռորբախը,— նշում է հեղինակը, — հայկական կոտորածների հետ կապված փաստերի հանգամանալի վերլուծությունից հետո, եկավ այն եզրակացության, որ «միայն Գերմանիայի շեշտված բարեկամական դիրքը Թուրքիայի նկատմամբ հնարավոր դարձրեց ջարդերի իրականացումը նման ահավոր մասշտաբով» (էջ 55):

Գրքում նոր փաստաթղթերի հիման վրա քննարկվում է Գերմանիայի դիրքը Արևմտյան Հայաստանում բարենորոգումներ անցկացնելու հարցում, թեև, ամբողջությամբ վերցրած, այս հարցն արդեն լուսաբանվել է սովետական արևելագետների աշխատություններում: Հեղինակը գալիս է այն եզրահանգման, որ «1894—96 թթ. հայկական կոտորածների ու վեց վիլայեթներում ռեֆորմների ձախողման գլխավոր պատասխանատվությունը մեծ տերություններից կրում է կայզերական Գերմանիան» (էջ 71):

Ստ. Ստեփանյանը նոր, հավաստի փաստերով է շարադրում նաև այսպես կոչված Հայկական հարցի վերաբացման ժամանակաշրջանի՝ 1912—1914 թթ. բարենորոգումների ծրագրի մշակման պատմությունը, ընդգծելով, որ կայզերական Գերմանիայի կառավարությունը «աներկիմաստ կերպով հանդես եկավ ռեֆորմների ռուսական նախագծի դեմ՝ քողարկվելով «օսմանյան կայսրության ամբողջականությունը պահպանելու քողով» (էջ 79):

Այս հարցի քննարկումն այնուհանդերձ անվիճելի գիտական բնույթ կկրեր, եթե հեղինակը չբավարարվեր սոսկ գերմանական աղբյուրների միակողմանի, ուրեմն և թերի ընդգրկումով, այլ մեջբերեր, համադրեր ու վերլուծեր ֆրանսիական, ռուսական ու հայկական աղբյուրները, իր վերաբերմունքը ցույց տար սովետական այն մասնագետների գործերի նկատմամբ, որոնցում հանգամանորեն քննարկվել է հարցը:

Ի դեպ, որպես ընդհանուր թերություն պետք է նկատել հեղինակի ակնբախ միտումը՝ բոլոր հարցերը լուսաբանել լոկ գերմանական աղբյուրների հիման վրա, մի բան, որ նվազեցնում է գրքի գիտական արժեքը:

Գրախոսվող աշխատության առանցքն է կազմում երկրորդ գլուխը՝ «Կայզերական Գերմանիայի իմպերիալիստական քաղաքականությունը Արևմտյան Հայաստանի նկատմամբ առաջին համաշխարհային պատերազմի տարիներին», որտեղ քննության են առնվում գերմանական ներթափանցումը Արևմտահայաստան, կայզերական Գերմանիայի պատասխանատվությունը հայերի նկատմամբ կիրառված գենոցիդի քաղաքականության մեջ և Գերմանիայի առաջադեմ հասարակայնության հայապաշտպան դիրքորոշման հարցերը:

Առաջին հարցի շարադրանքի մեջ նորը՝ դա գերմանական արխիվային փաստաթղթերի ու աղբյուրների օգտագործումն է: Ցույց է տրվում, թե ինչպես քայլ առ քայլ աճեց ու ամրապնդվեց գերմանա-երիտթուրքական դաշինքը: Բերվում են գերմանացի հեղինակ Հ. Ֆիրբուխերի խոսքերն այն մասին, որ գերմանական դիվանագետները «Թալեաթին դարձրել էին Բիսմարկ, և թուրքերը մեզ հրամցվում էին որպես մի ժողովուրդ, որն աշխարհի արարման իսկ օրից չուներ ոչ մի ուրիշ կրքոտ ցանկություն, բացի գերմանացիների կողքին պատերազմելուց» (էջ 106—107):

Առանձին ենթագլխում հատուկ քննարկվում է հայերի զանգվածային ցեղասպանության մեջ կայզերական Գերմանիայի պատասխանատվության հարցը: Այստեղ առավել հետաքրքրական և արժեքավոր են հենց գերմանացի հեղինակների՝ քաղաքական գործիչների, դիվանագետների, լրագրողների և այլոց մերկացնող ելույթներն ու խոստովանությունները:

Այսպես, վերը հիշատակված Ցիմմերմանը Գերմանիայի առաջադեմ հասարակայնության պահանջին՝ ներազդելու երիտթուրքական կառավարության վրա հայերին պաշտպանելու նպատակով, պատասխանում է հետևյալ կերպ. «Ի՞նչ կարող ենք անել: Չէ՞ որ մենք թուրքերի դաշնակիցներն ենք: Եթե այդ երեքը (խոսքը Թալեաթի, Էնվերի ու Ջեմալի մասին է) մեր կարծիքը հաշվի չեն առնում, մեզ մնում է միայն խզել դաշինքը: Իսկ այդ բանը մենք անել չենք կարող» (էջ 151):

Ժամանակակից թուրք պատմագրության կողմից Մեծ եղեռնի պատմության նենգափոխմանը մեր պատմաբաններն արդեն անդրադարձել են առանձին աշխատություններում: Սակայն վերջին տարիներին թուրք պատմաբանները պատմությունը կեղծելու նոր փորձեր են անում: Թուրք նոր կեղծարարներից մեկի՝ Սալահի Ռ. Սոնիելի քննադատությանն է նվիրված Գերմանական Դեմոկրատական Հանրապետության անվանի մարքսիստ-արևելագետ պրոֆեսոր Էռնեստ Վերների հոդվածը, որին ռուս ընթերցողը կծանոթանա գրախոսվող գրքի միջոցով: Պրոֆ. Վերները անժխտելի փաստարկումներով հերքում է Ս. Սոնիելի այն պնդումը, թե իբր օսմանյան կառավարությունը միջոցներ էր ձեռնարկում միայն հայ նացիոնալիստների դեմ և նրանց էր միայն ձերբակալում ու բռնագաղթի ենթարկում և որ ներքին գործերի մինիստրը կատեգորիկ կերպով արգելել էր ջարդերը (էջ 138): Նա ցույց է տալիս թուրք պատմաբանի պնդման փորողջ հնացածությունը. «Նման ձևով էին փորձում իրենց արդարացնել երիտթուրքական կենտկոմը ու կառավարության անդամները 1918 թվականին և ավելի ուշ»,— գրում է պրոֆ. Վերները (էջ 138—139): Միաժամանակ, պրոֆ. Է. Վերները իր հոդվածում խիստ քննադատում է կայզերական Գերմանիայի կառավարող շրջաններին՝ երիտթուրքական կառավարությանն հայաջինջ ու ցեղասպան քաղաքականությանը աջակցելու համար:

Նման մեղադրանքով ժամանակին հանդես են եկել գերմանական լրագրողներ Հ. Ֆիրբուխերը, Հ. Ծույուրմերը և այլն:

«Գերմանիայի զինվորական կառավարությունը ամբողջությամբ կիսում է պատասխանատվությունը 1915 թ. հանցագործության համար»,— գրում է Հ. Ֆիրբուխերը (էջ 141): Ուշագրավ է Ստ. Ստեփանյանի կողմից մեջբերված մի փաստաթուղթ, որը պահպանվել է ռայխստագի արխիվում: Դա ռայխստագի պատգամավորներից մեկի՝ ջարդերի անմիջական ականատեսի զեկուցումն է, որտեղ ասված է հետևյալը. «Մեզ, գերմանացիներիս, կմեղադրեն հանցավոր համաձայնության կամ ամոթալի թուլության մեջ, եթե մենք մեր աչքերը փակենք պատերազմի կողմից առաջ բերած ահավոր սարսափների վրա և լռությամբ շրջանցենք ամբողջ աշխարհին արդեն հայտնի փաստերը:

Եթե նույնիսկ հաշվի չառնենք մեր ընդհանուր քրիստոնեական պարտականությունը, մենք, գերմանացիներս, պարտավոր ենք անմիջապես դադարեցնել կենդանի մնացած կես միլիոն հայ քրիստոնյաների ոչնչացումը: Մենք Թուրքիայի դաշնակիցներն ենք և... միայն մենք այստեղ ազդեցություն ունենք... Նրանք, ովքեր հավատում են, որ թուրքական կառավարությունն ինքն իրեն, առանց Գերմանիայի կողմից ուժեղ ճնշման, կդադարեցնի կանանց ու երեխաների ոչնչացումը, չարաչար սխալվում են» (էջ 143—144):

Կայզեր Վիլհելմ երկրորդի և նրա կառավարության մեղսակցության հարցը, պետք է ասել, առաջին անգամ հանգամանորեն և փաստագրական բազմակողմանի նյութերի հիման վրա վերլուծության է ենթարկվել կանադական պրոֆեսոր, ազգությամբ գերմանացի Ուլրիխ Տրումպեների անգլերեն հրատարակված Գերմանիան և Օսմանյան կայսրությունը 1914—1918 թթ. ուշագրավ գրքում, որի մի ստվար մասը՝ հատուկ գլուխ, հատկացված է «հայկական հալածանքներին»: Նշված աշխատությունը մեր գիտական մամուլում ռուսերեն գրախոսվել է[1], իսկ հիշատակված մասը թարգմանվել և հրատարակվել է նաև հայերեն[2]: Հեղինակը մեզ անհայտ պատճառներով բոլորովին շրջանցել է վերոհիշյալ հրատարակությունները՝ նեղացնելով քննարկվող հարցի շրջանակները:

«Գերմանիայի և մյուս երկրների առաջադեմ հասարակայնությունը հայ ժողովրդի շահերի պաշտպանության դիրքերում» ենթագլխում հեղինակը իմի է բերել հարցի հետ առնչվող բազմազան փաստերը: Հայտնի, արդեն իսկ մեկնաբանված նյութերի հետ մեկտեղ այստեղ գիտական շրջանառության մեջ են դրվում նաև ցարդ անծանոթ, նվազ մատչելի ասույթներ, տեղեկություններ, գնահատականներ: Այսպես, հեղինակը մատնանշում է, որ հայերի գենոցիդի քաղաքականության դատապարտմամբ հանդես է եկել Ռոզա Լյուքսեմբուրգը (էջ 164—165): Ցավոք, նա կոնկրետ չի ասում, թե ի՞նչ է հատկապես շեշտել գերմանական պրոլետարիատի առաջնորդը, մինչդեռ, դա օգտակար կլիներ ընթերցողի համար:

Աշխարհահռչակ արևելագետ, պրոֆ. Յոզեֆ Մարկվարտի, հումանիստ գրող Արմին Վեգների և ականավոր մյուս մտավորականների մարդասիրական հայտնի ելույթների կողքին ընթերցողը կարող է հանդիպել ասույթների, որոնք վրիպել էին նախկին հեղինակների ուշադրությունից, օրինակ, գերմանական լրագրող Հարրի Ծույուրմերի Երկու տարի Կոստանդնուպոլսում գիրքը, որը թարգմանվել և հրատարակվել է նաև անգլերեն ու ֆրանսերեն: «...Բավական է ունենալ թեկուզ մի փոքր սեփական արժանապատվություն, որպեսզի առանց ամոթից կարմրելու դիտել մեր կառավարության ստորությունը հայկական հարցում»,— գրում է Հ. Ծույուրմերը: Եվ այնուհետև. «Խղճի, տխմար շրջահայեցություն և ստորության տխուր միացումարը գերմանական կառավարությանը դարձրին հանցավոր հայերի նկատմամբ...» (էջ 176—177):

Գրախոսվող աշխատության վերջին գլուխը վերնագրված է՝ «Գերմանա-թուրքական ներխուժողների և միջազգային իմպերիալիզմի պլանների ձախողումը Անդրկովկասում: Սովետական իշխանության հաղթանակը Հայաստանում»: Այստեղ հիմնականում ցույց է տըրվում Սովետական Ռուսաստանի վճռական դերը հայ ժողովրդի սոցիալական ու ազգային ազատագրման և վերածննդի գործում:

Նկարագրելով գերմանական ու Անտանտի իմպերիալիստների նենգ ու խարդախ քաղաքականության, քեմալական ներխուժման և դաշնակների վարած արկածախնդրական, հակաժողովրդական քաղաքականության հետևանքով 1920 թ. աշնանը Հայաստանում ստեղծված օրհասական վիճակը, հեղինակն իրավացիորեն նշում է, որ «հայ ժողովրդի համար ծանր այդ պահին միայն Սովետական Ռուսաստանը ցույց տվեց նրան անհրաժեշտ օգնություն» (էջ 207):

Գրքի եզրափակիչ մասում Ստ. Ստեփանյանը բացահայտում է կայզերական ու հիտլերյան Գերմանիայի վարած ագրեսիվ, մարդատյաց քաղաքականության միջև եղած կապը, վեր հանում Անդրկովկասի նկատմամբ ֆաշիստական մարդակերների այն զավթողական ծրագրերը, որոնք ինչ-որ չափով ժառանգվել էին պրուսական գիշատիչ իմպերիալիզմի զինանոցից: Սակայն, մեր կարծիքով, չափազանց կատեգորիկ է հեղինակի այն պնդումը, թե «երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին հիտլերյան Գերմանիայի քաղաքականությունը ըստ էության ոչ այլ ինչ էր, եթե ոչ կայզերական ու երիտթուրքական կառավարության հանցավոր քաղաքականության շարունակությունը» (էջ 223):

[1] Տե՛ս «Լրաբեր Հասարակական գիտությունների», 1969, № 12, (319), էջ 91—94:

[2] Տե՛ս «Բանբեր Հայաստանի արխիվների», 1970, № 2, էջ 125—146: № 3, էջ 109—140:



Գրախոսվող աշխատությունն ավարտվում է հեղինակի այն ճիշտ եզրակացությամբ, որ «ինչպես Արևմտյան, այնպես էլ Արևելյան Հայաստանում տեղի ունեցած ողբերգական իրադարձությունների ողջ պատմությունը ամբողջովին հաստատում է այն անվիճելի ճշմարտությունը, որ միայն Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության, Հայաստանում սովետական կարգերի հաստատման և ռուս ժողովրդի անգնահատելի օգնության շնորհիվ վերջնականապես խափանվեցին գերմանական և օտարերկրյա այլ զավթիչների ագրեսիվ, հանցավոր պլանները, և հայ ժողովուրդը փրկվեց ֆիզիկական լիակատար բնաջնջման սպառնալիքից» (էջ 225):

Ցավոք, գրքում սպրդել են մի շարք թերություններ, որոնց մեծ մասը, թերևս, չլիներ, եթե գիրքը խմբագրեր մասնագետ-պատմաբանը:

Նախ, օգտագործված աղբյուրների ու գրականության տեսության մասին: Այն բացակայում է ինչպես այս, այնպես էլ, իմիջիայլոց, հայ ժողովրդի նոր շրջանի պատմության տարբեր հարցերին նվիրված մի շարք աշխատություններում, որոնց հեղինակները կարծես խուսափում են իրենց նախորդների կատարած աշխատանքը արժեքավորելուց, գնահատելուց, գուցե մտածելով, թե դա կարող է նսեմացնել իրենց կատարած աշխատանքը: Կան ավելորդ շեղումներ: Այսպես, հիմնավորված չէ և նոր բան չի տալիս հատուկ ենթագլխի առկայությունը՝ «Հայաստանը Անտանտի և ԱՄՆ-ի իմպերիալիստական պլաններում» վերնագրով (էջ 192—200): Կան անհաջող կամ սխալ ձևակերպումներ: Օրինակ, 23-րդ էջում արաբները, քրդերը ներկայացվում են, որպես «ոչ օսմանյան ազգության» պատկանող մահմեդականներ, մինչդեռ հայտնի է, որ նման ազգություն գոյություն չուներ Թուրքիայում: Օսմանիզմը պարզապես երիտթուրքերի ցնորամիտ և խարդախ դոկտրինան էր, որը շատ կարճատև կյանք ունեցավ: 27-րդ էջում նշվում է, որ «Պանթուրքիզմի» (ընդգծումը իմն է— Ռ. Ս.) գաղափարախոսները քարոզում էին արևելքի ժողովուրդների միավորումը օսմանյան կայսրության հետ՝ կրոնական սկզբունքի հիման վրա»: Սա, իհարկե, բացահայտ սխալ է: Նման առաքելություն ստանձնել էին պանիսլամիզմի ջատագովները:

66—67-րդ էջերում ճիշտ կերպով քննադատելով դաշնակցությանը երիտթուրքերի հետ սիրաբանելու համար, հեղինակն այնուհետև գրում է. «փոխանակ գլխավորելու հայ ժողովրդի ազգային-ազատագրական պայքարը երիտթուրքական ռեժիմի պայմաններում, դաշնակների պարագլուխները հայերի զինման ու ապստամբության դեմ էին»: Ստացվում է, որ դաշնակները ընդունակ էին, կարող էին, բայց չգլխավորեցին արևմտահայերի ազատագրական պայքարը:

88-րդ էջում գրված է, որ Անտանտի երկրները և հատկապես Ռուսաստանը ավելի ուժեղ էին, քան Եռյակ միությունը (1914 թ. հունվարին— Ռ. Ս.), այդ պատճառով էլ Թուրքիան ստիպված էր համաձայնության գալ Ռուսաստանի և նրա դաշնակիցների հետ: Սակայն հայտնի է, որ համաշխարհային պատերազմը սկսվելուց առաջ ոչ ոք չէր կարող ստույգ ասել, թե հակամարտ ո՞ր կողմն է ավելի ուժեղ: Այդ բանը ցույց տվեց պատերազմը: Քիչ չեն հակասական կամ ուղղակի ոչ ստույգ թվերն ու փաստերը: Այսպես, հենվելով „Die Welt des Islams“ ամսագրի տվյալների վրա, հեղինակը գրում է, որ իբր 1896 թ. Արևմտյան Հայաստանի վեց վիլայեթներում մնացել էր ընդամենը 737 հազար հայ ազգաբնակչություն (էջ 44), որը խիստ նվազեցված է: Իսկ այնուհետև նշում է, որ առաջին համաշխարհային պատերազմի նախօրյակին հայերի թիվը օսմանյան կայսրությունում 3 մլն էր (էջ 115), որը չափազանցված է և հակասում է վերը բերված թվերին: 1909 թ. Կիլիկիայի դեպքերի մասին խոսելիս հեղինակը գրում է, որ միայն Ադանա քաղաքում զոհվեցին 30 հազար հայեր և որ ջարդերի հրամանը տրված էր երիտթուրքական «եռապետության» տրիումվիրատի կողմից (Էնվեր, Ջեմալ, Թալեաթ) (էջ 65): Նախ, այդ «եռապետությունը» 1909-ին գոյություն չուներ, այն կազմավորվեց պատերազմի ժամանակ՝ 1915 թվականին: Եվ հետո, 30 հազար հայ զոհվեց Կիլիկիայի բոլոր քաղաքներում ու Հալեպի վիլայեթում միասին վերցրած, և ոչ թե միայն Ադանա քաղաքում: Ճիշտ չէ նկարագրված Կիլիկիայի հայերի վերջին աղետը՝ 1921 թ.: Հեղինակը գրում է, որ իբր Կիլիկիա վերադարձած 150 հազար հայերը

